

Արտաշես Ատոմին ծնվել է 1951 թ. Լենինական քաղաքում: 1975 թվականից աշխատում է Երևանի Մետրոպոլիտենի շինարարությունում, որպես ճորատողների բրիգադավար: Գրում է բանաստեղծություններ ու պատմվածքներ:

ԱՐՏԱՇԵՍ ԱՏՈՄԻ

# «ՆԵՐՔԵՎ ՉՆԱՅԵՍ»

Մեր տան մոտ անտառակ կա: Ծառերը իրենք իրենց են աճել, երևի հարյուր-երկուհարյուր տարեկան կլինեն: Շատ են բարձր, իսկ բները՝ այնքան հաստ, որ երեք-չորս հոգով շրջան ենք կազմում, մատներս չի հասնում իրար: Մի քանիսի բներում մեծ փչակներ կան, իսկ մեկը շատ է գեղեցիկ: Մըտնում ես մեջը, ոտքի տեղ կա, կարող ես բարձրանալ և դուրս գալ մի փոքրիկ անցքից, մոտ տասը մետր բարձրության վրա: Անցքի մոտ մեծ ճյուղ կա, այնպես որ անցքից դուրս գալուց անմիջապես հետո կարող ես հանգիստ կանգնել ճյուղի վրա և դիտել քաղաքը, բայց այնտեղից մեծ հրապարակը չի երևում, չի երևում շուկան, Շահումյանի արձանը: Դրանք տեսնելու համար պետք է էլի ու էլի բարձրանալ, հասնել կատարը, իսկ կատարը հասնելու համար մեծ համարձակություն էր պետք, մենք վախենում էինք:

Մեր մեջ ամենաճարպիկը Առաքելն էր, բայց նա էլ չհասավ կատարին: Քիչ էր մնացել, բայց չդիմացավ, ետ դարձավ: Մենք ներքևում ոգևորվեցինք, թռչկոտեցինք, բայց ետ դարձավ, իսկ երբ իջավ ներքև՝ փչակից դուրս եկավ, երեսին գույն չէր մնացել, շատ էր վախեցել: Ասաց՝ երբ նայեցի ցած, քիչ մնաց ընկնեի. ոտքերս սկսեցին դողդողալ, ձեռքերիս մեջ եղած ուժը թռավ, մազ էր մնացել ընկնեի: Մենք ծիծաղեցինք: Ծիծաղեցինք նրա վախեցած աչքերի վրա, նրա պատմելու վրա: Նա շատ վիրավորվեց: Ու լացակումած հեռացավ: Ես տեսնում էի, թե ինչպես է թևքերով սրբում աչքերը: Մենք լռցացանք: Ոչ մեկիս մտքով չէր անցնում, որ Առաքելը մեր կատակներից կարող է նեղանալ:

— Ե՛ս կբարձրանամ,— ասացի: Կարծես ուզում էի դրանով մեզանից հեռացած ոգևորությունը ետ բերել: Ասացի առանց մտածելու: Ասացի ասելու համար:

— Առաքելի նմա՞ն,— ծիծաղեց Կորյունը:

— Մինչև փչակի վերջը կբարձրանա,— ծիծաղեց Լեռնիկը:

— Առաքելին կանչեք, բարձրանամ,— իմ մեջ քաջություն զգալով՝ ասացի ես:

— Առաքե՜լ, Առաքե՜լ, Առաքե՜լ,— կանչեցին տղաները:

Նա շուռ եկավ: Տղաները ձեռքով արեցին:

Եկավ: Խռովածի նման էր:

— Ի՞նչ կա:

— Մուրադը ծառն է բարձրանում:

— Ի՞նչ անեմ:

— Ասում է՝ կհասնեմ կատարը:

Առաքելը ինձ նայեց: Նայեց տըղաներին: Հետո էլի ինձ նայեց:

— Չես հասնի,— հաստատ ասաց նա:

Նայեցի վերև:

Կատարը տեսնելու համար գլուխս այնքան թեքեցի, մինչև որ գլխարկս

ընկավ գլխիցս: Իսկ ծառը հանգիստ ու անտարբեր օրորվում էր:

— Կբարձրանամ,— ասացի ու մտա փչակը:

— Հաշվենք բարձրացել ես,— ասաց Արամը:

— Սպասիր,— ասաց Առաքելը: Նա մոտեցավ և ականջիս փսփսաց.

— Ներքև չնայես:

— Ինչո՞ւ:

— Չնայես: Ներքև չնայես,— կրկնեց նա:

— Լավ,— ասացի ու մտա փչակ: Փչակի վերևի անցքից երբ դուրս եկա ամենամեծ ճյուղի վրա, տղաները մի քիչ հեռացել ու ինձ էին նայում: Նրանք ձեռքով արեցին: Ես մի անգամ էլ ափերիս մեջ թքոտեցի ու կպա ծառից: Որոշել էի հաստատ հաղթել ծառին: Կոտրել ծառի հպարտությունը: Ճյուղից-ճյուղ բռնելով, արագ բարձրանում էի: Ներքևից դեռ լսվում էին տղաների ոգևորված ձայները:

— Քեզ ամո՛ւր պահիր,— Արամի ձայնն էր:

— Զգուշացի՛ր,— Կորյունի ձայնն էր:

— Չգո՛ւյշ,— Լեռնիկի ձայնն էր:

— Ներքև չնայե՛ս,— Առաքելի ձայնն էր:

Ես ինձ հանգիստ էի պահում: Շընչառությունս կանոնավոր էր: Ձեռքերիս մեջ դեռ ուժ կար: Այսպես որ գնա, մի քանի րոպեից կհասնեմ կատարը: Բայց չգիտեմ ինչու ներքև նայել էի ուզում: Մի պահ կանգ առա, ականջիս հասավ Առաքելի ձայնը.

— Ներքև չնայե՛ս:

— Չեմ նայի,— կամաց որոշեցի ես, բայց էլի, չգիտեմ ինչու, ուզում էի գոնե աչքի տակով ցած նայել: Ինչքան բարձրանում, այնքան սիրտս սկսում էր ավելի արագ թպրտալ: Ընկրսեցի հևալ: Ծնկատս քրտնեց: Բայց ամենից վատն այն էր, որ անընդհատ ցանկանում էի ներքև նայել, գոնե աչքի տակով, գոնե թռուցիկ, բայց շարունակ լսում էի Առաքելի ձայնը.

— Ներքև չնայե՛ս:

— Հերի՛ք է,— լսեցի Լեռնիկի ձայնը:

— Իջի՛ր,— լսեցի Կորյունի ձայնը:

— Ներքև չնայե՛ս,— Առաքելի ձայնն էր:

Ինձ թվաց, թե Առաքելից ավելի շատ եմ բարձրացել: Նայեցի վերև: Քիչ էր մնացել: Ճյուղերը արդեն բարակել էին, բայց բունը դեռ հաստ էր:

Էլի սկսեցի բարձրանալ: Քանի բարձրանում էի, այնքան ճյուղերը ավելի շատ էին ճոճվում: Սիրտս արագ էր խփում, բայց ես հանգիստ էի, կարծես ֆիզկուլտուրայի ժամ էր: Կարծես պարանով էի բարձրանում մինչև ֆիզկուլտդահլիճի առաստաղը:

Ուր որ է, հասնելու էի կատարին և ձեռքս կպցնելու էի ամենաբարձր ճյուղի ծա.րին: Շատ հեռվից լսեցի Առաքելի ձայնը.

— Ներքև չնայե՛ս:

Նայեցի վերև: Ընդամենը երկու ճյուղ էր մնացել: Ուժերս լարեցի, բարձրացա նաև այդ երկու ճյուղը, և ահա ես կատարին եմ:

— Ուռա՜,— լսեցի տղաների ձայնը: Շատ հեռվից էր գալիս: Ներքևից էր գալիս: Վերևից էր գալիս: Ամեն տեղից նույն ձայնն էր գալիս:

— Ներքև չնայե՛ս,— Առաքելի ձայնն էր:

— Իջի՛ր,— Արամի ձայնն էր:

Ես մի քանի տերև պոկեցի ամենաբարձր ճյուղից, դրեցի գրպանս: Նայեցի քաղաքի կողմը: Երևաց հրապարակը: Երևաց Շահումյանի արձանը: Երևաց շուկան: Երևացին մարդիկ: Երևաց եկեղեցին: Սիրտս թունդ առավ: Ես քաղաքն էի տեսնում ամբողջությամբ: Ես մեր քաղաքն էի տեսնում

առաջին անգամ: Տեսնում էի ոտից-գլուխ: Հրաշք էր: Տեսիլք էր:

— Իջի՛ր,— կանչեցին տղաները:

— Ներքև չնայե՛ս,— Առաքելի ձայնն էր:

Սկսեցի իջնել: Սա ի՛նչ բան է, ավելի հեշտ է բարձրանալը, քան իջնելը: Իջնում էի դանդաղ, ոտ առ ոտ, հևասպառ:

Մեկ էլ նայեցի վերև, ահագին իջել էի: Դրանից սիրտ առա: Բայց շատ էի դանդաղ իջնում, նորից կանգ առա: Նայեցի վերև: Չէ, շատ եմ իջել: Ուրեմն քիչ մնաց: Ոգևորվեցի: Ճյուղերը ոտքերիս տակ հաստացել էին արդեն: Քիչ մնաց: «Այ հիմա կարելի է ներքև նայել»,— մտածեցի ես ու նայեցի ներքև:

Աչքերս շաղվեցին: Կպա բնին:

—Քեզ հանգի՛ստ պահիր,— Արամն էր:

Էլ ի՛նչ հանգիստ: Ամբողջ մարմնով դողում էի:

— Իջի՛ր,— Առաքելի ձայնն էր:

Փորձեցի, բայց վախենում էի բնից պոկվել:

— Իջի՛ր,— ավելի խիստ ասաց Առաքելը:

Շարունակեցի իջնել: Վայ էն իջնելուն: Ճյուղերը կարծես ոտքերիս տակից փախչում են: Մեկ էլ նայեցի: Տղաները արդեն մեծացել էին:

— Քի՛չ մնաց,— կանչեց Լեռնիկը:

Ահա վերջապես փչակի անցքը: Մտա անցքն ու սղղալով իջա ցած: Երբ փչակից դուրս եկա, տղաները փաթաթվեցին ինձ:

— Վախեցա՞ր,— ասաց Արամը:

— Չէ,— կմկմացի ես:

— Վախեցար,— համոզված ասաց Առաքելը:

— Վախեցա,— խոստովանեցի ես:

— Քաղաքը տեսա՞ր,— հարցրեց Կորյունը:

— Լրիվ:

— Գեղեցի՞կ էր,— ոգևորվեց Կորյունը:

— Շատ:

Միտս ընկան գրպանիս տերևները, հանեցի ու մեկնեցի Առաքելին:

— Վերցրո՛ւ:

— Որտեղի՞ց:

— Ամենավերևից:

— Ինչի՞ համար:

— Որ հավատաք:

— Հիմա՞ր,— ծիծաղեցին,— տերևների վրա գրա՞ծ է, որ ամենավերևից են...

Տերևները բնազդաբար նորից տարա գրպանս:

Ես գիտեի, որ ամենավերևից են:

*Նկ. ԱՐՏԱՎԱԶԴ ՅԱՐԱԼՅԱՆԻ*



# ՀՐԱՇԱԼԻ ՕՐ



Ծաղկաձորի «Գարուն» ճամբարի պիոներները էքսկուրսիայի էին դուրս եկել: Անտառում որքան ասես գեղեցիկ ծառեր, թփեր, բույսեր ու ծաղիկներ կային: Հրաշալի ծաղկեփնջեր կարելի էր կապմել, ծաղկաշղթաներ ու պսակներ հյուսել, և երեխաները նախորդ տարիների նման հրճվանքով նետվում էին դեպի բազմերանգ ծաղիկները: Սակայն դեռ չպոկած՝ կարմիր թևկապավորները կանգնեցրին նրանց.

— Ծաղիկներին ձեռք չտա՛լ... Ծիլեր ու թփեր էլ չի կարելի պոկել... Պիոներները բնության բարեկամներն են և ոչ թե թշնամիները:

«Կանաչ պարեկները» էքսկուրսիայի ընթացքում թույլ չտվեցին մի ծիլ կամ ծաղիկ պոկել, փըչացնել բնության հպարտությունն ու գեղեցկությունը: Խմբակի անդամներն ունեն իրենց անտառամասերը և հատկապես շաբաթ, կիրակի օրերին, երբ կերուխումի սիրահարները լցվում են բացատներն ու ծաղկառատ անկյունները, «կանաչ պարեկները» հետևում են, որպեսզի իրենց տեղամասում նրանք բնությանը վնաս չհասցնեն, ծաղիկներ ու թփեր չըփչացնեն, կրակ չվառեն: Անհրաժեշտության դեպքում նաև բացատրում են, որ տարիներ շարունակ անխնա պոկոտել են Ծաղկաձորի գեղեցիկ բույսերն ու ծաղիկները և դրանցից շատերը անհետանալու վտանգի տակ են և պաշտպանության ու հոգատար վերաբերմունքի կարիք ունեն:

Սկզբում ոմանց թվում էր, որ եթե ծաղիկներ չըքաղեն, պսակներ ու փընջեր չկապմեն, էքսկուրսիան անհետաքրքիր կըդառնա, նույնիսկ ձանձրալի: Բայց կամաց-կամաց բնության գեղեցկությունները, ուրախ խաղերը կլանեցին նրանց: Իսկ երգի ու երաժշտության, սրամիտ խոսքի ու ասմունքի վարպետներին անտառը միշտ էլ գրկաբաց է դիմավորում, իր հերթին հաճույքով ունկընդրում նրանց:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

# ՄԵՆԱՎՈՐ ԱՂԲՅՈՒՐ

Մութ անտառի խորքում
Մի աղբյուր կա անքուն,
Մեն ու մենակ,
Զնգում է զիլ ու հորդ
Դարավոր ու մամռոտ
Ծառերի տակ:

Աշնան մուժ ու միգում
Տերևներն են փակում
Հունը նրա,
Տերևների տակով
Խեղդված երգ ու ճիչով
Իջնում է նա:

Մեր անտառի խորքում,
Մեն ու մենակ երգում,
Կորչում է զուր,
Հեռու, հեռու այսպես,
Մենավոր ու անտես,
Մի հորդ աղբյուր:

# ԱՄՌԱՆ ԳԻՇԵՐ

Աղմուկ չկա մեր գյուղում,
Բարդիներն են լուռ դողում
Ծանապարհով մեկ,
Շուրջը քամի չկա պաղ,
Հողն ու երկինքն են խաղաղ
Եվ աստղերը մերկ,
Ծղրիդներն են երգ ասում,
Այգում մրգերը հասուն
Կաթում են մեկ-մեկ:

Չեն սոսափում թուփ ու սեզ,
Մի աստղ ընկավ, նայիր, տես,
Բլրակի վրա,
Քնել են հավք ու սողուն,
Քնել է և ժիր մեղուն,
Որ վաղ արթնանա:

Հողն է թրջվում պաղ ցողով,
Աքլորականչը գյուղով
Անցնում է կամաց,
Եվ ծով աստղերն են փայլում,
Ամռան գիշերն է քայլում
Դեպի լուսաբաց:

Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

•

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 28. ԻՆՉՊԵՍ ԿԱՐԵԼԻ Է «ԳԼՈՒԽԸ ԿՈՐՑՆԵԼ», ԿԱՄ՝ ԻՆՉ Է ՓՈԽԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Սովորական տրամաբանությամբ, իհարկե, կարելի է փող կորցնել, մատիտ, գրիչ, գիրք, վերջապես, խիղճ ու հավատ կորցնել, հետո ոտուձեռ ընկած որոնել, գտնել կամ չգտնել: Բայց գլուխը կորցնել, այսինքն՝ անջատվել գլխից, անհնար բան է, ուղղակի իմաստով դա նույնն է, թե գոյություն չունենալ:

Բայց ինչո՞ւ այն մարդուն, որ խըճըճվել, շփոթվել է շատ գործերի մեջ, չգիտի ո՛րն անել, ո՛րը թողնել, ասում ենք՝ «գլուխը կորցրել է»: Ասում ենք նույնքան հեշտ ու հանգիստ, դրա մեջ տարօրինակ ոչինչ չտեսնելով, ինչպես շատախոս մարդու մասին ասում ենք «գլուխս տարավ», թեև տեսնվա՞ծ բան է, որ մարդու գլուխը վերցնեն ու տանեն:

Ինչո՞ւ այսպես ասում ենք ու բնավ չենք զարմանում: Պատճառն այն է, որ մենք մանկուց արդեն վարժվել ենք փոխաբերությանը, վարժվել ենք այնքան, որ չենք էլ նկատում, թե ինչպես մի երևույթի հատկանիշը նմանողաբար վերագրում ենք մեկ ուրիշին: Եվ դա է լավը: Եթե նկատեինք՝ խոսելը մի տանջալի բան կդառնար, այնպես, ինչպես շնչելը դժվար կլիներ, եթե ամեն մի րոպե մտածեինք, թե դրա հետևանքով ինչ է կատարվում մեր օրգանիզմի մեջ: Իհարկե, կրթված մարդը գիտե այդ, և պետք է իմանա, բայց նա շարունակ չի մտածում դրա մասին, այլ «մոռանում» է: Այդպես էլ բանաստեղծը, երբ ոտանավոր է գրում, հատկապես չի մտածում ռիթմի ու հանգի մասին, թեև կարգին բանաստեղծը դրանց օրենքները լավ գիտե: Այդպես էլ գրագետ մարդը, ինչքան էլ լավ գիտենա լեզվի օրենքները, գրելիս կամ խոսելիս չի մտածում, թե ի՛նչ կանոններ է կիրառում, ի՛նչ բնույթի նախադասություն է կազմում, ի՛նչ տիպի փոխաբերություն է գործի դնում: Բայց, կրկնենք վերըստին, այդ ամենը պետք է գիտենալ, հետո՝ «մոռանալ» (իհարկե, պարզ է, թե ինչ «մոռանալու» մասին է խոսքը, այլապես ի՛նչ օգուտ իմանալուց, եթե դա պետք է իսպառ մոռանաս):

Փոխաբերությունն, առհասարակ, շատ ճկուն երևույթ է. բայն էլ կարող է փոխաբերության հիմք լինել, գոյականն էլ: Մեր զրույցի սկզբում բերված օրինակները բայական փոխաբերություններ էին: Դրանց թիվը դյուրությամբ կարելի է ավելացնել՝ երկինքը մռայլվեց, ուռին լաց է լինում, աչքերը վառվում են և այլն, և այլն:

Գոյականն էլ կարող է լինել փոխաբերության հիմք: Ասենք թե՝ զգացմունքների փոթորիկ, պատերազմի

թատերաբեմ, վշտի ծով, բեմի հայելի. գործունեության դաշտ. այս բառակապակցությունների մեջ ընդգծված բառերը կիրառված են փոխաբերաբար: Դրանք ուղղակի իմաստով որևէ կապ չունեն իրենց նախորդող բառերի հետ, բայց փոխաբերաբար բանի էությունը հայտնի են դարձնում հիմնալի՝ պատկերավոր ու տպավորիչ: Իհարկե, փոթորիկը բնության տարերքն է, ուղղակիորեն անհնար է, որ փոթորիկ լինի մարդու ներաշխարհում, բայց փոխաբերությունն ավելի լավ է արտահայտում «չափազանց բորբոքված զգացմունքները» հասկացությունը, քան որևէ ուղղակի տրամաբանություն: Թատրոնի մարդիկ ասում են բեմի հայելի, թեև բեմում ոչ մի հայելի չկա, այդպես կոչում են բեմի այն բացվածքը, ենթադրվող չորրորդ պատը, որի միջով դիտում ենք ներկայացումը: Փոխաբերություն, որ կարճ է, ցայտուն, պատկերավոր:

Այս զրույցի սկզբում ասացինք, թե փոխաբերություններ մենք գործ ենք ածում, ասում և լսում ենք շարունակ, ամեն քայլափոխի: Կարող եք հարցնել՝ եթե դրանք այդքան հասարակ բաներ են, էլ ո՞րն է դրանց գաղտնիքն ու բարդությունը:

Հարցին պետք է պատասխանել այսպես՝ նախ մեր ասած ու լսած փոխաբերությունները մեծագույն մասով մենք չենք ստեղծում, այլ գործ ենք ածում վաղուց ի վեր գտնված, բյուրեղացած ձևերը: Իսկ ժամանակին դրանք ստեղծել են շնորհալի մարդիկ: Եվ առհասարակ պատկերավոր, իմաստալից, թարմաշունչ փոխաբերություններ ստեղծելը շնորհքի գործ է:

Փոխաբերությունները լինում են կարճ և ընդարձակ: Դրանք կարող են արտահայտվել և՛ երկու բառով, և՛ նախադասությամբ, կամ մի ամբողջ բանաստեղծությամբ: Այդպիսին է, օրինակ, Վահան Տերյանի «Կարուսել» բանաստեղծությունը, որ սկսվում է հետագայում մի քանի անգամ կրկնվող

Պտտվիր, պտտվիր, կարուսել,
Ես քո երգը վաղուց եմ լսել...

տողերով: Այստեղ փոխաբերության հիմքը (և Տերյանի բանաստեղծական գյուտը) այն նմանությունն է, որ հեղինակը տեսել է կյանքի մշտահոլով ընթացքի և պտույտ եկող կարուսելի միջև:

Ի վերջո, ասենք և այն, որ փոխաբերությունն այլաբերության տեսակներից մեկն է միայն (ճիշտ է՝ կարևորագույնը) և բնավ պարտադիր չէ, որ անպայման տեղ գտնի ամեն մի խոսքի կամ բանաստեղծության մեջ: Շատ և շատ ընտիր գրվածքներ, բանաստեղծություններ կարող են պարունակել խոսքի արտահայտչության այլ միջոցներ, այլաբերության ուրիշ տեսակներ: Դրանցից մեկն էլ կոչվում է փոխանունություն (մետոնիմիա), որը և կլինի մեր հաջորդ զրույցի նյութը:





# ԿԼԻՄԿԸ

ԳՐԻԳՈՐ ՏՅՈՒՏՅՈՒՆՆԻԿ

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

...Ծխից ու բոցից հեղձուցիչ օգոստոսյան այդ օրը, երբ այրվում էր կայարանը, Կլիմկոն ապաստան գտավ հանքահորի տեսակավորման կայանի ոչ մեծ ավանյակում, որտեղ մի ժամանակ կշռանոցն էր: Կշռանոցի հաստ պատերը և դրսից, և ներսից սվաղված էին սև, թանձր մրով, դրսից՝ ածխափոշով ու մանրածխով, որ թափված էր հենց կշռանոցի ետևը՝ բարձր թմբերով, ներսից չուգունե կլոր վառարան-«բուրժույկայի» ծխից: Բայց հազվադեպ էր լինում, որ նա մենակ մնար մրածածկ պատերի մեջ, հաճախակի մինչև ուշ գիշեր, գալիս նրա մոտ նստում էին դպրոցի ընկերները՝ չարաճճի, ավանի անդադրում տղաները: Իսկ Զուլֆատ Հարենը՝ հացի փոխ Հարեն պապի թոռը, ամեն օր մնում էր գիշերելու: Տղաներին դուր էր գալիս Կլիմկոյի՝ ածխաթմբերի միջի ցածլիկ, քարե խրճիթը, ավանից հեռու ընկած, ինչպես Ռոբինզոնի կղզում... Նստոտում էին գետնին, ոտքները ծալապատիկ, թուրքական ձևով, և կրուցում էին մթան մեջ, շիկանալուց մուգ կարմիր չուգունե «բուրժույկայից» արձակվող հրաշեկ ծիածանների մեջ: Կամ էլ հանկարծ բոլորը լռում էին, առանց ծպտունի լսում, լսում գիշերային մարտերի հեռավոր դղրդյունը:

Բայց դա արդեն հետո էր այդպես: Իսկ առաջին երկու օրը կշռանոցում մենակ էր Կլիմկոն: Ծակուծուկերում և պատերի տակ վազվզում էին առնետները, իսկ «բուրժույկայից», քանի դեռ ջրայի ժանգը չէր այրվել, ածխահոտ և խեղդող տաքություն էր ելնում:

Երկու գիշեր Կլիմկոն քնեց մերկ սեղանին: Առնետներից պաշտպանվում էր մահակով, թխկթխկացնելով պատին: Առնետները, որ արդեն վաղուց այդտեղ տեր ու տնօրեն էին, վախենում էին ու խաղաղվում, բայց քիչ հետո, Կլիմկոն չէր հասցնում աչք կպցնել, նորից էր սկսվում ճղվողներով, թփթփոցներով ու ճանկռտուքներով խրախճանքը:

Միայն երրորդ գիշերը Կլիմկոն քնեց հանգիստ, որովհետև առնետներն այլևս չէին ձանձրացնում: Կշռանոցից դրանց քշեց Զուլֆատ Հարենը՝ Կլիմկոյի վաղուցվա ընկերը: Նա գտավ Կլիմկոյին, նկատելով լուսամուտին փակցրած թիթեղի միջից ելնող խողովակի ծուխը: Հևասպառ վազելով եկավ,

Սկիզբը՝ №№ 6, 7

այրող շառագույնը սուր, թուխ այտոսկրերին, և այնպես ուրախացավ հանդիպումից, որ խտտեց Կլիմկոյին ու գետնից կտրած ման էր ածում, սեղմում կողոսկրերը ճրթճրթացնելով: Զուլֆատը ուժեղ տղա էր, թեև Կլիմկոյից համարյա մի գլխով ցած:

— Ես էլ ավանով մեկ վազվզում եմ,— արագ, բառերը կուլ տալով, խոսում էր Զուլֆատը:— Էստեղ, էնտեղ... Իկուլթոկը չկա: Հարցնում եմ. ո՞ւր է Կլիմկոն: Ո՞վ է տեսել Կլիմկոյին: Կլիմկոն չկա, ոչ ոք չի տեսել: Ա՜յ թե որտեղ ես: Լա՜վ է: Ու-ու-ո՜ւ, լա՜վ է:

Կլիմկոն միայն ժպտում էր: Նա շատ էր ուրախացել և լուռ էր միայն այն պատճառով, որ առհասարակ էլ չխոսկան էր: Սիրում էր լսել և լուռ ժպտում էր կամ տխրում, կամ էլ ամբողջովին լարվում, պատկերացնելու համար այն, ինչի մասին պատմում էր ընկերը:

— Առնետներ կան ինձ մոտ,— ասաց Կլիմկոն:— Էնքան մեծ, որ թըփթըփացնում են...

Զուլֆատի նեղլիկ ու սև, թրատող աչքերը մի պահ փակվեցին (նա միշտ այդպես էր անում, երբ պետք էր միտքը լարել), և իսկույն կրակոտ փայլեցին.

— Ուզո՞ւմ ես հիմա դրանց չքացնեմ, ուզո՞ւմ ես,— բղավեց նա եռանդուն:— Բոլորին տափաստան քշեմ արածելու: Ուզո՞ւմ ես:

Նա արագ գտավ առնետների բոլոր ելումուտերը, «բուրժույկայից» դույլի մեջ թափեց շիկացած ածուխ և սկսեց մահակով խրել բոլոր անցքերը, սրբելով այրող կծու ծխից հոսող արցունքները:

— Հիմի խի՜ճ լցրու, խի՜ճ, որ ծուխը դուրս չգա,— բղավեց նա Կլիմկոյի կողմը:— Ա՜յ, էդպես: Օ՜հ, յսո՞ւմ ես. փռշտում են: Ա՛ռ քեզ, ա՛ռ քեզ:— Եվ ինքն էլ շուտ-շուտ փռշտում էր ու ծիծաղում արցունքների միջից:

Հետո նրանք հանքահորի սղոցարանից փայտի թեփ բերեցին ու գետնին հաստ փռեցին, որ նկուղից չփչի: Մարագում գտան մի հին մահճակալ՝ թիկնակներին նիկելապատ գնդեր, բերեցին կշռանոց ու անկողին սարքեցին չոր խոտից, որը չէին հասցրել ուտել ձիերը: Հանքահորն արդեն ջուր էին լցրել, իսկ ձիերին տարել պատերազմ: Մինչև երեկո Կլիմկոյի նոր, մռայլ բնակարանը պայծառացավ, տաքացավ, իսկ թեփից դեղնամեղրանուշ հոտ էր բուրում: Որպեսզի տոնեն իրենց մուտքը նոր բնակարան, ինչպես վայել է իսկական տանտերերին, տղաներն ընթրիքին կլեպն հետը կարտոֆիլ եփեցին և կերան աղի խոշաճարպի հետ...

Մի իսկական տոն էր դա...

Բայց մեկուկես ամիս անց՝ առավոտյան, կարճատև մարտից հետո տափաստանից կայարան ներխուժեցին իտալացիները: Նրանք ամբողջ օրը ավանով մեկ ընկել էին հավերի ետևից, կրակում էին նրանց վրա հրացաններով ու ավտոմատներով, հարայհրոց գըցել գնչուների պես: (Մինչև նրանց գալը Կլիմկոն ու Զուլֆատը չգիտեին, որ հավերն էլ թռչունների պես, միայն ոչ այդքան բարձր, կարող են թռչել): Իտալացիները կերան հավերը, հետո խմբերով, ամենաքիչը երկու-երեք հո-



գի, դռնեդուռ ընկած փողով ուտելիք էին ման գալիս:

— Մա՛րկա, մա՛րկա...— գոռում էին նրանք:

Ավանում ոչ ոք չէր հասկանում, թե ինչ է նշանակում դա և, նրանք, ում մոտ դրոշմանիշ կար, բերում էին իտալացիներին: Սրանք պայրանում էին ու մեկ իրենց լեզվով, մեկ գերմաներեն բղավում՝ չռելով սև, գնչուական աչքերը:

— Հիմարնե՛ր, սոլդատո իտալիանո... տալ ձեզ մարկեն... Դենատո դելյա Գրոսդոյչեն Ռայխես, ունդ վի մյուսեն... դուք պետք է տաք... ֆյուր դիկես վերտֆոյլյե հելդ. լյուտտե-կաթ, բուրրո-կարագ, ֆորմաջո-պանիր... Մանջյարե: Էսսեն: Ուտել...

Այդ մասին Կլիմկոյին պատմեց Զուլֆատը, որովհետև իտալացիները նրանց մոտ էլ էին եղել: Հարեն պապը ասել էր.

— Մենք քարածուխ ունենք... Ուրիշ ոչինչ:

Իտալացիներն էլ վրա ընկած թալանել սկսեցին ավանը ու խլում էին թե՛ ուտելու բաները, թե՛ հագնելիք, ինչը ամենից լավն էր:

Մի շաբաթ անց նրանք գնացին, իսկ ավանում սկսվեց սովը:

Շուկայում, փայտե հին վառարանների մոտ կանգնել էր մի սայլ: Այն շրջապատել էին բոլոր կողմերից ու գոռգոռում էին գլխից վեր բարձրացնելով՝ ով ինչ ուներ:

— Ի՜մը առ: Լրիվ նոր է, մի տե՜ս...

Սայլի մեջ, որին մի զույգ ձի էր լծած, կանգնել էր մի մարմնեղ թանձրամորուք քեռի ու հաշտարար տոնով, հայացքով շոշափելով-ջոկջկելով ապրանքները, ասում էր.

— Կամա՜ց, կամա՜ց... ինչ որ ինձ պետք է՝ կվերցնեմ: Ինքս կջոկեմ: Մենակ թե կամաց, քաղաքացի՜ք: Վե՜րջ տվեք: Հապա հեռացի՛ր, ձեռք մի՛ տուր պարկերին, թե չէ մահակով կշրխկացնեմ: Զեռք է զցում... Է՜յ, դո՛ւ, դրապը տուր էստեղ: Ի՞նչ տամ: Ալյուր կա, եգիպտացորեն, աղ՝ սպիտակ, սլովյանսկյան...

Եվ այստեղ Կլիմկոն տեսավ Նատալյա Միկոլաևնային՝ իր և Զուլֆատի ուսուցչուհուն: Նա կանգնել էր բարուրի երեխան գրկին, երեխայի հետ կրծքին սեղմած վարդանախշ, անհամար վարդով իր շորը: Կլիմկոն Նատալյա Միկոլաևնային այդ շորով տեսնում էր միայն տարին երկու անգամ. սեպտեմբերի մեկին և պարապմունքների վերջին օրը, Նատալյա Միկոլաևնան ամեն անգամ այնպես էր հուզվում իր աշակերտներին հանդիպելիս և արձակուրդին նրանց հրաժեշտ տալիս՝ այդ վարդանախշ կգեստի ամեն վարդը փթթում էր նրա հոգում և այտերին: Իսկ անցյալ գարնանը վերջին դասին նա տխուր ժպտալով ասաց. «ահա և դուք ոտք եք դնում պատանեկություն՝ արդեն ուրիշ ուսուցիչների հետ, իսկ ես նորից կվերադառնամ փոքրիկների մոտ, նույնպիսի պստլիկ սնկիկների մոտ, ինչպիսին դուք էիք առաջին դասարանում: Հիշո՞ւմ եք:»— Եվ արցունքները, երկու կաթիլ, գլորվեցին նրա աչքերից, բայց նա չզգաց դա և ժպտում էր: Հետո ասաց. «Դասն ավարտված է, ցտեսությո՛ւն, երեխանե՛ր...»

Եվ շրջվեց դեպի պատուհանը: Իսկ իրենք կանգնել էին ու կանգնած մնացել նստարանների մեջ, թեև միջանցքում արդեն ուրախ ժխոր էր բարձրացել. ավարտվել էր ուսումնական տարին, դրսում արև՝ լիքը պոնկե-պռունկ, երկնքից մինչև գետին. ո՞վ չէր ուրախանա:

Նատալյա Միկոլաևնան մի կողմ էր կանգնել ամբոխից, որը վրա էր տվել սայլին, և, փոքրիկ ու գունատ, նայում էր թանձրամորուքին՝ լայն բացված՝ աչքերով: Նրա դեմքին ո՛չ արհամարհանք կար, ո՛չ էլ պայրույթ. կար միայն վա-

խնցած պարմանք։ Նրա մի ունքը, արևածագի ոսկով շաղված, լարված վեր էր բարձրացել ու մանր-մանր դողում էր։ Կլիմկոն ու Զուլֆատը մոտեցան Նատալյա Միկոլաևնային (նա չէր նկատել տղաներին) և հուլմունքից կմկմալով, մեկը մյուսի խոսքը կտրելով ասացին.

— Բարի օ՛ր, Նատա՛լյա Միկոլաևնա...

Նա ցնցվեց և ձեռքից թողեց վարդանախշ զգեստը։ Կլիմկոն և Զուլֆատը ճարպկորեն բռնեցին թեթև, փետուրի պես շորը և այդպես բռնած էլ կանգնել էին, շփոթված ու երջանիկ ժպտալով։

— Կլիմկո՞... Զուլֆա՞տ... Վա՜յ, ո՛նց վախեցրիք ինձ...— և շողալով նայում էր նրանց քնքուշ, հարազատ հայացքով։

— Է՜յ, դու, ա՛յ կնիկ,— ձայն տվեց թանձրամորուքը։— Կարմիր շորով։ Մո՛տ արի, ես առնում եմ քո ապրանքը։

Նատալյա Միկոլաևնան դանդաղ շուռ եկավ դեպի նա և ասաց կամաց, բայց այնպես, որ շուրջը բոլորը լսեցին և ետ նայեցին։

— Ո՛չ, ո՛չ։ Ձեզ չեմ տա... ոչ մի գնով։

Թանձրամորուքը կույչ արե՛ց քարի պես անկենդան աչքերը և բերանը ծռմռելով ասաց.

— Սրա-ա՜ն տեսեք... Ձե-՜կ, դե գնա ուռիր-փչվիր սովից։— Երևում էր, շորը նրա դուրն եկել էր։

— Գնանք, երեխանե՛ր, մի քիչ ուղեկցեք ինձ,— ասաց Նատալյա Միկոլաևնան Կլիմկոյին և Զուլֆատին։

Նրանք հեռացան շուկայից։ Իսկ թանձրամորուքը ամբոխից մեկին հարցուփորձ էր անում.

— Ո՞վ է դա... Վարժուհի՞։— Եվ բղավեց.— Է՜յ դու, վարժուհի՛... Գոռո՜վ... Արի այս...

Նա դեռ չէր հասցրել վերջացնել խոսքը, ափալթափալ նստեց սայլի մեջ ու ձեռքերով ծածկեց գլուխը։ Քարը թռավ նրա վրայով և կպավ դետդտան պատին։ Ամբոխը թափով ետ քաշվեց սայլից, բոլորը վախեցած նայեցին Նատալյա Միկոլաևնային ու տղաներին, իսկ Զուլֆատը դողում էր ու գոռում.

— Ես կսպանե՜մ դրան։ Էդպիսիներին պետք է սպանե՜լ։— Նա չանթեց մի բուռ քար, կկոցեց աչքերն ու թափ վերցըրեց նետելու երկրորդը...

— Չհամարձակվե՛ս, Զուլֆա՛տ...— հրամայեց Նատալյա Միկոլաևնան, իսկ Կլիմկոն բռնեց ընկերոջ թևը և ասաց.

— Պետք չի՛, Զո՛ւլ, մեկ էլ տեսար մերոնցից մեկին խփեցիր։

— Դրա՜ն տեսեք, ի՜նչ է սովորեցրել էդ այլասերվածներին,— խռխռաց թանձրամորուքը։— Վարժապե՜տ...— Նա տեսավ, որ վտանգն անցել է և նորից դուրս ցցվեց սայլից։— Դրա՜ն մի տես, ի՜նչ է սովորեցրել։

Նրանք հեռացան շուկայից, իսկ Զուլֆատը շարունակում էր դողալ, ասես տենդի մեջ լիներ և մերթընդմերթ կատաղորեն ետ էր նայում պսպղուն աչքերով։ Նատալյա Միկոլաևնան մեղմորեն շոյում էր նրա խուզած սև գլուխը իր գունատ, կապույտ երակներն երևացող ձեռքով և ասում.

— Դե լա՜վ, հերիք է, Զուլֆա՛տ, հանգստացի՛ր... Փոքրի՜կ հերոս։— Նա կամաց, քնքշորեն ծիծաղեց և, տղաները, ասես նշանի էին սպասում, նույնպես ժպտացին։ Այդ ժամանակ Կլիմկոն անվճռականորեն հարցրեց.

— Իսկ կարելի՞ է նայել ձեր փոքրիկին։

— Փոքրիկի՞ս...— Նատալյա Միկոլաևնայի այտերը հազիվ նշմարելի դալուկ-վարդագունեցին։— Անունն Օլյա է։— Նա քիչ բարձրացրեց յասամանագույն խանձարուրի ծայրը, և Կլիմկոն Զուլֆատի հետ ճակատ-ճակատի խփելով նայեցին ծածկոցի տակը։ Նրանք

տեսան փոքրիկ-փոքրիկ մի դեմք, ճերմակ, կավճի պես, և կոպերն ամուր խփած, որ դողդողում էին արևից, իսկ շրթնիկները, ոչ թե կարմիր, այլ կապտավուն, մոշի գույնի, անդադար շարժվում էին, ասես ինչ-որ բան էին փընտրում:

— Հիմա, հիմա...— ասաց փոքրիկ դեմքին Նատալյա Միկոլաևնան:

Տղաները չէին հասկանում, թե ինչ է նշանակում այդ «հիմա»-ն, միայն ժպտում էին. «Օյա՜, Օ-Օյա՜»,— և չըպպացնում էին շրթունքներով:

— Ո՞րտեղ ես հիմա ապրում, Կլի՜մկո:— Նատալյա Միկոլաևնան թախծոտ նայեց Կլիմկոյի աչքերին,— ես գիտեմ, ինչ պատահել է՝ պատմել են, և ես շատ էի ուզում քեզ տեսնել, ու Օյան ծնվեց հենց այդ օրը...

Կլիմկոն տխրեց, Զուլֆատը նույնպես կախ գցեց խուճված գլուխը:

— Մենք հիմա Զուլֆատի հետ ենք,— Կլիմկոն կանգ առավ և տվեց ուսուցչուհուն նրա վարդանախշ շորը, որը մինչև հիմա ձեռքին էր՝ քեռու բաճկոնի տակ պահած:— Ոչ մի բան մի՜ փոխանակեք, տեղափոխվեք... ես ու Զուլֆատը խնդրում ենք, տեղափոխվեք մեկ մոտ: Մենք ձեզ կօգնենք, փոքրիկին կպահենք...

— Ամեն ինչ կանենք,— իր հերթին ասաց Զուլֆատը Նատալյա Միկոլաևնային, պսպղացնելով իր կրակոտ, հափատարիմ աչքերը:— Օյայի համար ես օրորոց կբերեմ: Մենք ունենք: Երկաթից: Հայրս ինքն է սարքել դեպոյում, երբ ես ա՜յ այսքան էի:

Նատալյա Միկոլաևնան ժպտաց և խոնարհեց հայացքը:

Նա իրոք ապրելու տեղ չուներ:

— Շնորհակալություն,— կամաց ասաց Նատալյա Միկոլաևնան տղաներին և ավելացրեց է՜լ ավելի կամաց.— Ես ուրախ եմ, երեխանե՞րս, ուղղակի երջանի՞կ եմ...



Կլիմկոն ու Զուլֆատը արագ գործի անցան: Կեսօրից մինչև երեկո նրանք Նատալյա Միկոլաևնայի սենյակից տեղափոխեցին այն ամենը, ինչ կար: Արդեն լրիվ մթնել էր, երբ Զուլֆատը բերեց օրորոցը:

Զուլֆատի ետևից եկավ նաև Հաբեև պապը, ցածրահասակ, չորուկ, բամբակած անդրավարտիքով, բրդե գուլպաներով և հանքափորի սրածայր կոշիկներով: Պապը բերել էր մի տոպրակ չորահաց, որ չխկչխկացնելով դրեց սեղանին, իսկ ինքը գնաց դեպի դուռը, շեմին նստելու: Զուլֆատը շտապ գընաց նրա ետևից, որ աթոռ դնի տակը: Պապը ձեռքերով ու կրծքով կռթնել էր ձեռնափայտին ու լուռ դիտում էր, թե ինչպես Նատալյա Միկոլաևնան, փոքրիկ, «բուրժույկա»-ի շողերից վարդագունած, ուսերին մազերը թափած, պստլիկ շշով թեյ է խմեցնում մանկանը:

— Կաթ է հարկավոր,— ասաց խիստ:

Նատալյա Միկոլաևնան մեղավոր հայացքով նայեց նրան.



*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

— Չկա... Կտրվել է. Մուսա Շաֆարովիչ...

Հարեն պապը շուռ եկավ դեպի Զուլֆատը, բշտեց նրան ձեռնափայտով.

— Կգնաս Լոբովկա, Ֆայկուլինների մոտ: Էնտեղ կաթ կա:

— Հիմա՞,— տեղից վեր թռավ Զուլֆատը:

— Վաղը,— ասաց պապը:

— Ո՛չ, ո՛չ, ես ձեզ խնդրում եմ, պետք չի, մի՛ անհանգստացեք,— աղերսագին ասում էր Նատալյա Միկոլաևնան:

— Սո՛ւս կաց,— կայրացած, ինչպես Զուլֆատի վրա կկայրանար, ասաց Հարեն պապը, և տղաներն անհարմար կզգացին դրանից Նատալյա Միկոլաևնայի առաջ, իսկ նա միայն ժպտում էր երեխայի վրա կռացած:

Հարեն պապը առանց հրաժեշտ տալու ճռռացրեց դուռը, գլխով անելով, որ Զուլֆատն էլ հետևի իրեն:

Կլիմկոն հասավ նրանց ետևից արդեն ածխաթմբերի մոտ:

— Գիտե՞ս ինչ եմ մտածել, Զո՛ւլ,— հուզախռով ասաց Կլիմկոն:— Գնում եմ աղի:

Զուլֆատը կանգ առավ:

— Որտե՞ղ:

— Սլովյանսկ: Լսեցի, թե ոնց էր էդ հաստամռութ մորուքը շուկայում ասում. «Ա՜ղ սպիտակ, սլովյանսկյան»: Հեռու էլ չի: Քեռի Կիրիլոն շուտ-շուտ էր գընացքն էնտեղ քշում: Առավոտը գնում էր, իրիկունն արդեն տանն էր...— և շշուկով արագ-արագ ասաց, որ Զուլֆատն իր խոսքը չկտրի:— Հետո ինչ, որ մի քիչ կարտոֆիլ ու ճարպ ունենք: Դա էլ հազիվ մի երկու ամիս հերիքի: Իսկ առաջը ձմեռ է: Քանի հիմի եղանակները տաք են, հարկավոր է գնալ: Ետ գալիս ճամփին ուտելիքի հետ կըփոխեմ, կաթով կարող է...

— Մենակ չես գնա...— համառորեն պնդում էր Զուլֆատը:— Ես էլ կգամ քեզ հետ:

— Բա տանն ո՞վ կմնա Նատալյա Միկոլաևնայի հետ: Խոսք ենք տվել օգնել ու փախչում ենք:

Հրաժեշտին նա ասաց.

— Վա՞ղը:

— Ծեգին, դեռ իրենք քնած կլինեն,— ասաց Կլիմկոն:— Իսկ հետո դու կպատմես Նատալյա Միկոլաևնային, թե ուր եմ գնացել:

Զուլֆատն ամուր բռնեց Կլիմկոյի ուսերից, քաշեց դեպի իրեն ու երկար պահեց այդպես: Հետո ականջին տաք շշնջաց.

— Ուզո՞ւմ ես ճամփի համար քեզ իտալական դաշույն տամ: Ուզո՞ւմ ես:

— Թռցրե՞լ ես,— կարմացավ Կլիմկոն:

— Չէ, փոխել եմ չորս ձվով: Նրանք իրենց հրացաններն էլ ուտելու բանով կփոխեին: Ես գիտեմ:

— Դաշույն պետք չի,— ասաց Կլիմկոն:— Էսպես կգնամ: Ո՞վ պիտի ինձ ձեռք տա...

Նա արթնացավ շատ վաղ: Ածխաթմբերի արանքները դեռ նոր-նոր սկըսել էին գորշանալ: Նատալյա Միկոլաևնան կծկված քնել էր: Օյան սեղմվել էր նրան: Նա համարյա ամբողջ գիշերը լաց էր եղել, իսկ հիմա պինդ քնել էր, թշիկները հապիվ նկատելի ծածկվել էին քնի շառագույնով:

Կլիմկոն անաղմուկ քարածուխ լըցրեց «բուրժույկայի» մեջ (նա գիշերն էլ քարածուխ էր ավելացնում, ինչպես սովոր էր անել դեռ իրենց բարաքում քեռի Կիրիլոյի հետ ապրելիս), վերցրեց մաքուր տետր, մատիտ ու գրեց.

«Նատալյա Միկոլաևնա: Զուլֆատն ամեն ինչ ձեզ կպատմի: Ես շուտով կըվերադառնամ: Կլիմ»:

Նա ոտքերի ծայրերին դուրս եկավ կշռանոցից, խոր շնչեց տափաստանային վաղորդյան օդը, կարծես ջրհորից ջուր խմեց և ուղևորվեց ավան՝ Բոչոնոկի մոտ:

*(Շարունակելի)*




## ՀԱՍՄԻԿՆԵՐԻ ՓՈՒՆՋԸ

— Մարիզա, վեր կաց: Դե շուտ վեր կաց, կեսգիշեր է արդեն:

Մարիզան լսում է մոր ձայնը, ասես երազում: Բայց ոչ, մոր ձայնն իրական է, ստիպում է վեր կենալ տաքուկ անկողնուց: Իսկ քունը տանում է: Հիմա ամբողջ գյուղն է քնած: Սակայն Մարիզան պետք է վեր կենա...

Ամեն գիշեր Մարիզան մոր հետ գնում է կալվածատիրոջ պլանտացիաներում հասմիկներ հավաքելու: Մարիզան ինը տարեկան է, բայց արդեն ստիպված է օգնել մեծերին: Տատիկը շատ ծեր է, հայրը վաղուց գամված է անկողնուն, իսկ քույրերը դեռ փոքր են:

Կալվածատերը հավաքած ծաղկաթերթերը մեծ գնով վաճառում է օծանելիքի ֆաբրիկային, իսկ Մարիզային ու նրա մորը չնչին կոպեկներ է վճարում:

Մարիզայի նմանները շատ են Իտալիայում. երեխաներ, որոնք առավոտից երեկո, հաճախ էլ գիշերը՝ մինչև լուսաբաց, քարհանքերում քար են քարշ տալիս, աշխատում են կալվածատիրոջ համար, ռեստորաններում աման են լվանում, որպեսզի սովից չմեռնեն...

«Սպասիր, կգա ժամանակ, և դու ծաղիկները չես տա կալվածատիրոջը, այլ կհավաքես հասմիկների մի մեծ փունջ ու կնվիրես մայրիկին»,— ասում է տատիկը Մարիզային:

Մարիզան շատ է ուզում, որ տատիկի խոսքերն իրականանան:

ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՈՒՐ

# ԿԱՏՈՒՆԵՐԻ ԿՂԶԻՆ



Կատուների մի կղզի կա
Տաք ու հեռու Հնդկաստանում:
Ուր նրանք ողջ օրն արևկա
Խաղում են ու հանգստանում:

«Կատուների իշխանություն»—
Այսպես են այդ կղզին կոչում:
Նրա շուրջը լոկ օրնիբուն
Թռչող ձայներն են կոնչում:

Արտասովոր այդ աշխարհից
Մեզ մի լուր է միայն հասել.
Նրանք փախել են այն նավից,
Որ կղզու մոտ է խորտակվել...

## Աշխարհա-գրության դասին



— Բեթհովենի թերակղզու
Տեղը գիտե՞ս, Սաս՛ւն:
— Նույնիսկ Գլինկայի կղզու
Տեղը կասեմ իսկույն:

— Իսկ Մոցարտի ու Հենդելի
Սառցադաշտերն ո՞ւր են:
— Նույն քարտեզի վրա էլի՝
Անտարկտիդայում ցուրտ:

— Ապա ցո՛ւյց տուր Մենդելսոնի
Ծովախորշը սառած:
— Ա՛յ, այստեղ է, հենց Շուբերտի
Ծովախորշին կպած...

— Իսկ որտե՞ղ է միշտ սառցերես
Ծանծաղուտը Բախի:
— Խնդրեմ, մատս հենել եմ ես
Նրան՝ առանց վախի...

— Եթե Լիստի ու Գրիգի
Գագաթներն էլ ասես,
Ուրեմն դու, առանց խոսքի,
Դասդ «հինգի» գիտես:



# Ինչ ցանես, էն էլ կհնձես

Հայկական ժողովրդական հեքիաթ



Լինում է չի լինում մի չար հարս: Սրա կեսուրը ծանր հիվանդ է լինում, կանչում է հարսին, թե՝ սիրտս խորոված է ուզում: Հարսը լսում է ու ականջի ետևն է գցում: Կեսուրը էլի է կանչում, էլի խնդրում, թե սիրտս խորոված է ուզում: Որ շատ ասում է, հարսը փնթփնթալով դուրս է գնում տանից. «Խորոված հա՛ խորոված, էս է մեռնում ես, էլ զուր տեղն ինչի՞ ես մեզ ծախսի տակ գցում»: Մոտիկ առվից գորտերի կռկռոց է հասնում ականջին: «Հիմի որ մի քանի գորտ բռնեմ, խորովեմ տամ իրեն, ի՞նչ է հասկանալու»,— մտածում է անհոգի չար հարսը:

Այդպես էլ անում է:

Հիվանդը մի կտոր բերանն է տանում ու թքում:

— Մսի համ չուներ, էս ի՞նչ տվիր ինձ, ա՛յ հարս...— կասկածով նայում է նա հարսին ու ավելացնում.— Ինչ ինձ համար արիր՝ առաջդ պահված լինի:

Էս կեսուրը մահանում է, հարսը մեծանում, ինքն էլ է կեսուր դառնում, ծերանում, անկողին ընկնում, մեռնելու օրը գալիս է: Սա էլ կանչում է իր հարսին, թե՝ սիրտս խորոված է ուզում: Հարսը լսելուն պես դուրս է վազում, մարդուն ուղարկում շուկա, թե գնա, խորովածի լավ միս բեր, ինքը կրակը վառում է, հենց նա միսը բերում է, սա շարում է շամփուրների վրա, դնում կրակին խորովում: Պատրաստ խորովածը ներս տանելիս, մեկ էլ, տեսնում է ի՞նչ, խո-



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

բովածի տեղ շամփուրին շարված են գորտեր: Ետ է դառնում, թափում, նոր միս է շարում շամփուրին, խորովում, ներս տանելիս, տեսնում է խորովածի տեղ շամփուրին էլի գորտեր են շարված... Եվ այսպես մի քանի անգամ:

Կեսուրի համբերությունը հատնում է, ձայն է տալիս ներսից.

— Հա՛րս, ի՞նչ արիր խորովածը, բեր ուտեմ, խորոված ասելով չմեռնեմ:

Հարսը ստիպված է լինում գալ-ասել կեսուրին, թե էսպես ու էսպես:

Կեսուրը հասկանում է, բայց անցածը անցած, եղածը եղած էր: Մեռնելուց առաջ ասում է հարսին.

— Ինձանից քեզ խրատ, հարս, իմացիր, ինչ ցանես՝ էն էլ կհնձես:

*Վերապատմեց ԱՆ. ՍԱՀԻՆՅԱՆԸ*

# ԾԱՂԿԱԾ ԾԱՌԵՐ

*ԱՆԴՐԱՆԻԿ ՏԵՐՏԵՐՅԱՆ*

Զյուն է իջել ծառերին,
Զյուն է իջել ծառերին,
Բարակ քամին է փչում,
Մեղուներն են խճճվում
Փաթիլներին ճյուղերի...

Բայց այս ի՞նչ է,
Զարմանք բան,
Օրը տաք է, տաք այնքան,
Իսկ ծառերի ճյուղերին
Ո՛չ փաթիլներն են հալչում,
Ո՛չ մեղուներն են սառչում:



ՍԱՄՊԵ-ԳՈՍԻՆԻ

# ՀԱՅՐԻԿՆ Է ՈՐՈՇՈՒՄ

Այդպես է լինում ամեն տարի, այսինքն, անցած և այս տարի, և դրանից առաջ էլ՝ շատ վաղուց, չեմ հիշում, երբվանից սկսած: Հայրիկն ու մայրիկը միշտ երկար վիճում են, թե որտեղ գընան հանգստանալու: Ապա մայրիկը սկսում է լաց լինել և ասել, թե ինքը կգնա իր մոր մոտ: Ես նույնպես լաց եմ լինում, որովհետև տատիկին շատ եմ սիրում, բայց նրա բնակավայրում լողափ չկա: Վերջ ի վերջո, մենք գընում ենք մայրիկի ցանկացած տեղը և, իհարկե, ոչ տատիկի մոտ:

Անցյալ օրը ընթրիքից հետո հայրիկը խստահայաց նայեց մեզ և ասաց.

— Ուշադի՛ր լսեք ինձ: Այս տարի ես չեմ ցանկանում ոչ մի խոսակցություն լսել, ինքս եմ որոշում: Մենք գընալու ենք հարավ: Ես ունեմ Պյուժլա- Պենի մի հասցե, որտեղ կարելի է ամառանոց վարձել:

— Է՜հ, թանկագի՜նս,— ասաց մայրիկը,— ինձ թվում է, որ դա լավ միտք է:

— Ա՜յ, դա լա՜վ է,— բացականչեցի ես և վազ տվեցի սեղանի շուրջը, որովհետև, երբ բոլորը գոհ են լինում, տեղում նստելը դժվար է:

Հայրիկը լայն բաց արեց աչքերը, ինչպես անում է այն ժամանակ, երբ ինչ-որ բանի վրա զարմացած է լինում, և ասաց. «Ահա՜ թե ինչ: Դե, ուրեմն, ամեն ինչ կարգին է»:

Մինչ մայրիկը սեղանը կհավաքեր, հայրիկը պահարանից դուրս քաշեց ստորջրյա որսորդական դիմակը:

— Նիկո՛լյա, ես ու դու լա՜վ ձկնորսություն ենք անելու:

Ես մի քիչ վախեցա, որովհետև դեռ այնքան էլ լավ չեմ լողում: Երբ ինձ ցածից պահում են, իհարկե, կարողանում եմ պառկել ջրի երեսին, բայց հայրիկն ասաց, որ ես չանհանգստանամ: Ինքը ինձ լողալ կսովորեցնի, իր երիտասարդ ժամանակ ինքը եղել է դեպարտամենտի ապատ ոճի լողի չեմպիոն և դեռ շատ ռեկորդներ կգերականցեր, եթե մարզվելու ժամանակ ունենար:

— Հայրիկը ինձ ստորջրյա ձկնորսություն կսովորեցնի,— ասացի մայրիկին, երբ նա խոհանոցից վերադարձավ:

— Հիանալի է, տղա՛ս,— պատասխանեց մայրիկը,— թեև Միջերկրական ծովում կարծեմ թե շատ ձուկ չկա: Այնտեղ չափազանց շատ են ձկնորսները:

— Ճիշտ չէ,— ասաց հայրիկը:

Սակայն մայրիկը խնդրեց, որ երեխայի ներկայությամբ չհակադրվի իրեն, և ինքը այդ բանն ասաց, որովհետև լրագրում այդպես էր գրված: Դրանից հետո մայրիկը շարունակեց այն ձեռագործը, որը վաղուց էր սկսել:

— Լսի՛ր,— ասացի հայրիկին,— բայց եթե այնտեղ ձուկ չկա, ջրի տակ մենք հիմար տեսք կունենանք:

Հայրիկը ոչինչ չասաց, դիմակը դըրեց պահարանը, իսկ ես թթվեցի, ինչ որ ճիշտ է՝ ճիշտ, ամեն անգամ, երբ ես ու հայրիկը ձկնորսության ենք գը-

նացել, նույն բանն է կրկնվել՝ ոչինչ չենք բերել: Հայրիկը պահարանի մոտից վերադարձավ և ձեռքը լրագիր առավ:

— Հապա ինչպե՞ս ենք ստորջրյա ձկնորսություն անելու,— հարցրի ես,— որտե՞ղ ձուկ կա:

— Մորի՛ցդ հարցրու,— ասաց հայրիկը,— դրա մասնագետը նա է:

— Ձուկը Ատլանտիկայում է,— դարձավ ինձ մայրիկը:

Դրանից հետո ես հարցրի. Ատլանտիկան հեռո՞ւ է այն վայրից, որտեղ մենք ենք գնալու, հայրիկը վրա բերեց, որ եթե ես դպրոցում լավ սովորեի, այդպիսի հարցեր չէի տա: Դա, իհարկե, անարդարացի է, որովհետև մեր դպրոցներում ստորջրյա ձկնորսության գծով դասեր չեն տալիս, սակայն ես ոչինչ չասացի:

— Պետք է կազմել այն իրերի ցուցակը, որոնք վերցնելու ենք մեզ հետ,— ասաց մայրիկը:

— Այդ արդեն չի՛ լինի,— բացականչեց հայրիկը:— Այս տարի ես չեմ պատրաստվում մեքենան դարձնել կահույք փոխադրող բեռնատար: Լողազգեստներ, կարճ տաբատներ, թեթև հագուստ և մի քանի բրդյա բաներ...

— Նաև ճաշի ամաններ, էլեկտրական սրճեփ, կարմիր վերմակը և մի քանի ափսե,— ասաց մայրիկը:

Հայրիկը խիստ ջղայնացած, բազկաթոռից վեր թռավ, բերանը բաց արեց, բայց չհասցրեց խոսել, որովհետև նրա փոխարեն մայրիկն այդ արեց:

— Չէ՞ որ քեզ լավ հայտնի է,— ասաց մայրիկը,— թե մեր հարևաններն ինչ պատմեցին անցյալ տարի իրենց վարձած ամառանոցի մասին: Եղածչեղածն այնտեղ երեք հատ քնձռոտ ափսե է եղել, իսկ խոհանոցում՝ երկու հատ փոքրիկ կաթսայիկ, որոնցից մեկը՝ ծակ: Նրանք ստիպված են եղել իրենց անհրաժեշտ բոլոր բաները թանկուկրակ գնով տեղում առնել:

— Նրանք պարզապես անշնորհք մարդիկ են,— ասաց հայրիկը և նորից նստեց:

— Հնարավոր է,— ասաց մայրիկը,— բայց եթե դու ձկնաձուր ուզես, ես չեմ կարողանա ծակ ամանի մեջ եփել, եթե նույնիսկ ձեզ հաջողվի ձուկ որսալ:

Մայրիկի խոսքի վրա ես լաց եղա, որովհետև իրոք այնքան էլ լավ բան չէ գնալ մի ծովափ, որտեղ ձուկ չկա, երբ մոտերքում կա ինչ-որ ձկնառատ Ատլանտիկա: Մայրիկը մի կողմ դրեց իր ձեռագործը, ինձ վերցրեց ձեռքերի վրա և ասաց, թե չարժե այդ հիմար ձկների պատճառով տխրել, որ ես ամեն առավոտ կուրախանամ, երբ իմ հարմարավետ սենյակի պատուհանից տեսնեմ ծովը:

— Գիտե՞ս ինչ,— ասաց հայրիկը,— ամառանոցի պատուհանից ծովը չի երևում, թեև ծովը հեռու չէ, երկու կիլոմետրի վրա է: Դա վերջին ամառանոցն է, որը կարելի է Պլյաժ-լա-Պենում վարձել:

— Իսկ լողափը քարքարո՞տ է,— հարցրեց մայրիկը:

— Ո՛չ, տիկի՛ն: Ամենևի՛ն,— հանդիսավոր բացականչեց հայրիկը:— Լողափում ավազ է: Մանր ավազ: Այդ լողափում ոչ մի քար չես գտնի:

— Ավելի լավ,— ասաց մայրիկը:— Նիկոլյան իր ժամանակը չի վատնի անընդհատ ջրի մեջ քար շպրտելու վրա: Այն ժամանակից ի վեր, ինչ դու նրան սովորեցրել ես քարերն այնպես շպրտել, որ ջրի երեսին ցատկոտեն, նրա համար դա ուղղակի հիվանդություն է դարձել:

Ես նորից լաց եղա, որովհետև իրոք լավ է, երբ քարերը ցատկոտում են ջրի երեսով:

— Ես կգնամ տատիկի մո՛տ,— բղավեցի ես և ոտքով ուժեղ հասցրի ոտկրե գնդիկին:

— Մայրս ինձ նորից վերցրեց ձեռքերի վրա և ասաց, որ ես լաց չլինեմ, որ մե-




կանից ամենաշատը հայրիկը հանգստի կարիք ունի, որ եթե այդ վայրը, որտեղ հայրիկն է ուզում գնալ, նույնիսկ կըղվելի է, միևնույն է, պետք է գնալ և ձեվանալ, թե գոհ ես:

— Բայց...— ասաց հայրիկը:

— Ես ուզում եմ քար շպրտել,— բըղավեցի ես:

— Դու այդ բանը կանես եկող տարի, եթե հայրիկը որոշի մեզ տանել Բեն-լա-Մեր:

— Դա՞ որտեղ է,— հարցրեց հայրիկը, որը այնպես էլ բերանը բացած ըսպասում էր:

— Բեն-լա-Մերը,— ասաց մայրիկը,— Բրետանում է, որտեղ Ատլանտիկան է, շատ ձուկ կա և հարմարավետ հյուրանոց, հենց քարքարոտ ու ավազոտ ափին նայող հյուրանոց:

— Ուզում եմ Բեն-լա-Մեր գնա՜լ,— բղավեցի ես:— Բեն-լա-Մեր եմ ուզո՜ւմ:

— Բայց, սիրելի՛ս,— ասաց մայրիկը,— պետք է խելամիտ լինել, դա հայրիկն է որոշում:

Հայրիկը ձեռքով շփեց դեմքը, խոր հոգոց հանեց և ասաց.

— Դե լավ: Ես ամեն ինչ հասկացա: Բայց այդ հյուրանոցն ինչպե՞ս են անվանում:

— Բո-Ռիվաժ, սիրելի՛ս,— պատասխանեց մայրիկը:

Հայրիկն ասաց, թե ինքը նամակ կըգրի, որպեսզի իմանա՝ ազատ սենյակներ մնացե՞լ են:

— Սիրելի՛ս, չարժե, ես արդեն ամեն ինչ արել եմ: Մերը քսանիններորդ սենյակն է, որը նայում է ծովին և լողարան ունի:

Եվ մայրիկը հայրիկին խնդրեց, որ նա տեղից չշարժվի, որովհետև ինքը ուզում է ստուգել, թե իր գնած ֆուֆայկան նրա վրայո՞վ է: Բրետանի երեկոները կարծես երբեմն զով են լինում:

*Թարգմ. ԴԵՐԵՆԻԿ ՍԱՐԻԲԵԿՅԱՆԻ*




● Կատվի աչքերը 40 անգամ ավելի զգայուն են լույսի նկատմամբ, քան մարդունը:

● Ճնճղուկի պարանոցում ավելի շատ ողներ կան, քան թե ընձուղտի:

● Դելֆինը թեև 96 հատ ատամ ունի, բայց կերը կլանում է առանց ծամելու:

● Ճապոնիայում, Տոսասիմիդզու քաղաքի մոտ, ծովեզրին կառուցվում է 20 մետր խորությամբ, աշխարհում առաջին ստորջրյա զբոսայգին: Այցելուները կարող են զբոսնել ապակեպատ ճեմուղիներով, հիանալ ծովային բուսական ու կենդանական աշխարհով:

● Նոր Զելանդիայի Պուարենգա գետը զարմանալի հատկություն ունի: Գետի կեսով հոսում է սառը ջուր, մյուս կեսով՝ տաք ջուր: Այդ նրանից է, որ գետը թափվող հեյզերների տաք ջրերը որոշ ժամանակ հոսում են չխառնվելով սառը ջրերին: Կանայք որոշ հարմարանքների օգնությամբ տաք ջրերի մեջ ճաշ են պատրաստում, իսկ ձկնորսները մի ափում ձուկ են որսում, մյուս ափում՝ եփում են, ուտում:

● Արյան փոխներարկման առաջին փորձը կատարվել է 15-րդ դարի վերջին, Հռոմի պապի վրա: Արյունը վերցվել է երեք երիտասարդներից և ներարկվել պապին: Սակայն թե՛ հիվանդը և թե՛ երիտասարդները մահացան: Այս դեպքից հետո մեկ դար արյան փոխներարկում չկատարվեց:

1667 թվականին Ռիչարդ Լոուերը մարդուն փոխներարկեց հորթի արյուն: Փորձը ավարտվեց հիվանդի մահով և այդ պատճառով արյան փոխներարկումը նորից մոռացության մատնվեց:

20-րդ դարի սկզբներին հայտնաբերվեցին արյան խմբերը, պարզաբանվեցին արյան համատեղելիությունը, որից հետո միայն արյան փոխներարկումը դարձավ լրիվ անվտանգ բուժական միջոց և լայն կիրառություն գտավ բժշկության տարբեր ճյուղերում:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*





ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԴԱՎԻԹ ՀՈՎՀԱՆՆԵՍ

# ԳԱԶԱՆԱՆՈՑ ՏՂԱՆ

Այս տղան մի ողջ
գազանանոց է,
այսպիսի տղա
ձե՞զ էլ ծանոթ է.
— Ճստիկ մի թռչուն,
ջրում՝ իսկը շուն,
երգելիս՝ սոխակ,
շաղակրատելիս՝
անդուլ կաչաղակ,
փափկությամբ՝ կատու,
բայց ճանկերն հատու,
ուտելիս՝ խոճկոր,
խրատ լսելիս՝
մեծամիտ աքլոր,
մեղմությամբ՝ այծյամ,
վազելիս՝ ջայլամ,
բարությամբ՝ փիսիկ,
[illegible]
խայթելիս՝ մեղու,
անքնությամբ՝ բու,
փնթիությամբ՝ խոզ,
սուտ-սուտ լացելիս՝
մի կոկորդիլոս,
համբերությամբ՝ ուղտ,
վզով՝ մի ընձուղտ,
համառությամբ՝ եզ,
խորամանկությամբ՝
խաբեբա աղվես,
լռելիս՝ մի ձուկ,
[illegible]ելիս՝ մի մուկ.

կռվելիս՝ հորթուկ,
շարժվելիս՝ արջուկ,
քացի տալիս՝ ձի,
դաս պատրաստելիս՝
մի ծույլ գետաձի,
գոռոզությամբ՝ սագ,
սրտով՝ նապաստակ,
քելքով՝ մի կաքավ,
երբ նեղանում է՝
փքված հնդկահավ,

տաքգլուխ վառյակ,
խռովեց՝ ոզնի,
հազար փուշ ունի,
ճարպկությամբ՝ հովազ,
երբ զայրանում է՝
անտառի վարազ,
սիրամարգ ու այծ,
գայլ, վագր ու քարայծ,
ոնգեղջյուր ու ցուլ,
արագիլ, պինգվին,
սկյուռ, ծկնկուլ,
— այս տղան մի ողջ
գազանանոց է,
այսպիսի տղա
ձե՞զ էլ ծանոթ է:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# «ԱՐՋՆ ԱՆՏԱՌԻ ԶԱՐԴՆ Է»

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Նկ. ՆԻԿՈԼԱՅ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Անտառապահի խոտերը կորել էին: Աշուն էր գալիս: Վայրի կաղին ու հաճար կերած խոզ անտառապահին անպայման պետք էր: Նա պիտի հենց անտառից քշեր մթերման կայան, ու ճղճղացնելով մթերեր-պրծներ, միայն մի երկու մերունացու պահեր, որ մյուս տարի էլի լիքը խոճկորներ ունենար: Պարզ է, կաղին ու հաճար կերած խոզ արջին էլ էր պետք, մանավանդ դիմացը ձմեռ էր: Անտառապահը էլ ծմակի փեշ ու խորք չթողեց՝ ման եկավ, ո՛չ խոզ կար, ո՛չ խոզի հետք: Մի տեղ նկատեց, որ խոզի հետքերը արջը ջնջել է, բայց լավ չի ջնջել: Խոզերի հետքի վրա արջըն իր հետքն է թողել: «Խոզերիս ոտնահետքերը լավ չի ջնջել, բայց կարո՞ղ է իրենց լրիվ ջնջել է»,—մտածեց անտառապահը ու սարսափով կանգնեց արջի դեմ: Արջն անխռով ընդունեց անտառապահին, շատ սիրալիր, անգամ մի քիչ հումորիկ, նեղացած, իբր թե՝

գործ չունենայիր, չէիր գա: Անտառապահն էլ լավ է, արջն էլ լավ է: Խոմեցին դեսից-դենից, ապրուստից, կյանքից, անտառապահը խոսքն առաջ տարավ.

— Քո խիստ կարոտն էի քաշում՝ փառք աստծու, աչքով տեսա, խոզերիս էլ որ տեսնեմ, էլ դարդ չունեմ:

— Ի՞նչ խոզեր,— իր արևով զարմացավ արջը,— դու խոզ ե՞րբ ես պահում որ... Դու չե՞ս, որ մարդկանց ասում ես՝ խոզերն անիծում են անտառի հերը, քչփորում, քանդում են մատղաշ ծառերի արմատները, մեծ վնաս են հասցնում նորատունկներին, բացի դա, ասում ես, անտառը լիքը գել ու արջ է... Էսպես խոսողը բա խո՞զ կպահի: Սուտ է, դու խոզ չես պահում‹

Անկեղծ ասած՝ արջն էնպես համոզիչ տոնով էր խոսում, որ անտառապահին թվաց, թե ինքը երբեք ու երբեք խոզ չի ունեցել, բայց նրա խոր հոգում հանկարծ ճղճղացին կորած խոզերը:

— Ի՞նչ լավություն ասես՝ կանեմ: Ձեռիցս ի՞նչ գալիս է՝ կանեմ: Միա՛յն թե խոզերիս տեղն ասա:

— Խոզերիդ տեղը չեմ ասի, խոզերը՛դ կմնան ինձ, դրանից էլ մեծ լավությո՞ւն:— Անտառապահը գունատվեց, արջը փռթկաց:— Իսկ ի՞նչ լավություն կարող ես անել,— արջն այնպես լավ ասաց, որ անտառապահին թվաց, թե արջը մուշտակի տակից հանելու է իր խոզերը և իր առաջն է անելու, թե՝ էս էլ քո խոզերը, տար:

Ամենալավ մեղրատանձենու տեղը ցույց կտամ,— խորամանկ ասաց անտառապահը:

Հիմա հոկտեմբեր է, իսկ մեղրատանձը հասնում է օգոստոսին, ես քեզնից լավ գիտեմ տանձենիների տեղը: Թե բանի տեղ իմանալ գիտես, խոզերի՛դ տեղն իմացիր.— նեղացավ արջը:

— Ես ձորի լորենու փչակում մեղր կա, չեչով մեղր, կհանեմ, կուտես:

— Պապիդ արևը, բան գիտես, բա՞ն ասա: Իմ ապրուստի տեղն ինձ մի՛ սովորեցնի:

Անտառապահը խեղճացավ ու խեղճ-խեղճ ասաց.

— Քեզ համար քո ուզած խոզը կըմորթեմ:

— Ա՛յ ապրես,— արջը թաթը դրեց անտառապահի ուսին,— թե չէ մեղրատանձից ու մեղրից ես խոսում քո խոզերը թողած: Բայց...— արջը թաթը տարավ քունքին,— խոզ ունե՞ս, որ խոզ մորթես: Թե մտքովդ հաճար ու կաղին կերած խոզի խորոված է անցնում, ես մորթեմ, տասը հատ, էլի տասը հատ, հետո էլ չորսը մորթեմ:

— Քանչորսն էլ ողջ-առողջ մնո՞ւմ են,— ուրախացավ անտառապահը,— բկի՛դ մեռնեմ, ա՛րջ ախպեր, դու նորից ես մեր պատկերացումը փոխում դասագրքերի նկարների, ոտանավորների ու պատմվածքների արջերի մասին: Դու ուրիշ արջ ես: Ախր, ո՞նց էլ հասկացել ես, որ էս տարվա խոզերը նպատակային են, տղայիս եմ պսակելու:

— Օ՛, լավ լուր եմ լսում: Թող խաղաղությամբ ընտանիք կազմեն: Ուրեմն էս կերի առատ տարին ես պիտի իմ բարեկամի՛ խոզե՞րն ուտեմ: Ամոթ չի՞, մենք հո մի օրվա համար չե՛նք:

Զրուցելով քիչ առաջ գնացին, մեկ էլ արջին հետաքրքրեց, թե ինչ է գըրված ծառին մեխված տախտակի վրա: Անտառապահն էլ կարդաց. «Եղնիկը անտառի զարդն է»:

— Չէ՛ մի,— նեղացավ արջը,— անտառի՞, թե՞ ձեր սեղանների զարդն էլ է...

— Դե որ շատ մեծ մարդ է գալիս, ուզում ենք մեծ պատիվ տալ...

— Թող եղնիկը ձեր սեղանների զարդը մնա, ես դեմ չեմ, իսկ անտառի զար-

դը արջն է: Էս գրություններից շատ կը-
լինեն կպցրած ամեն տեղ, «եղնիկ» բա-
ռը ջնջում ես և գրում ես իմ անունը:
Թող բոլորը կարդան՝ «արջը բնության
կարդն է»: Ավելի լավ է և ավելի ճիշտ
է: Թե չէ եղնիկը...

Անտառապահը հանեց կողքի կախ պայուսակից մի մատիտ ու դողդողալով ջնջեց «եղնիկ» բառը, տեղը խոշոր տառերով գրեց՝ «արջը»...

— Արջը բնության կարդն է,— հանգիստ կարդաց անտառապահը:

Արջին տված խոստման համաձայն և հանուն իր խույերի, անտառապահը որտեղ մի հարմար տախտակ էր տեսնում, ձեռքն էր առնում, գրում նույնը, անտառում մի հարմար տեղ, ճամփի վրա կպցնում: Արջն հաճույքով կարդում էր ծառերին փակցված գրությունները և ի լուր ամենքի, խնդմնդոցով ասում. ես եմ, է՛, ի՛մ մասին է գրված...

Քոթոթը նայեց մորը և ասաց.

— Դու ո՞ր օրվա կարդն ես:

— Բոլորը երազում են արջ ծնված լինել, իսկ դո՞ւ... Անգետ ես, ոչինչ, դեռ քոթոթ ես, ձմեռը գա՝ որպես քոթոթ քուն կմտնես ու գարնան գալու հետ, տաքերն ընկնելու հետ որպես արջ կարթնանաս ու կզգաս, թե որքան մեծ երջանկություն է արջ լինելը: Մանավանդ երբ քո գոյությամբ կարդարում ես անտառը, բնությունը, աշխարհը:

Գնում էին արջն ու քոթոթը, մեկ էլ արջը կանգնեց: Մոտ կանչեց քոթոթին ու կամաց ասաց.

— Անտառապահի խոյերը գալիս են, մի-մի հատ բամփենք, խտտենք ու գընանք:

— Բայց դու անտառապահի հետ բարեկամ ես,— կարմացավ քոթոթը:

— Մենք մեր վարձն ենք մեր ձեռքով վերցնում:

— Ի՞նչ վարձ:

— Ա՛խ, ոչ մի բան չգիտե՞ս,— սըրտնեղեց արջը: Իսկ խոյերը մոտենում էին:— Սրանք կլոր տարին օգտվում են իմ անտառի բարիքներից, դրա համար պետք է հարկ վճարեն՝ ընդամենը մի երկու խոյ: Սրանք մեր հաշվին են ապրել, մեր բաժին կաղինն են կերել, գիրացել:

— Կաղի՞նը:

— Բացատներում, էրոզիայի ենթարկված հողերում տնկիներ էին շարել: Ուշադիր չեղավ: Խոյերը մեջը դառան, քանդեցին, քարը քսեցին: Տեղը սովորել էին: Տեսա տեր չի կանգնում, մի օր ընկա մեջը՝ մի երկու արջաթաթալոշ խփեցի: Ճղճղալով փախան ու բողոքեցին ինձ վրա: Անտառապահին էլ տեսնելով, որ ճար չունի, ախր, ինքը մեղավոր է, ես՝ անմեղ, ինքը չի կարող մատը ծալել ու ասել, թե դու էս մեղքի տերն ես, իսկ ես կարող եմ ասել ու ասել, ասել ու ասել, ասել ու ասել...

— Ասա ու ասա՛, ասա ու ասա՛, ասա ու ասա՛...

— Տնա՞կ ես անում,— կայրացավ արջը:— Մի երկու խոյ ճղճղացնելուց հետո քեզ եմ ճղճղացնելու, հա՛...

— Ամոթ չի՞, դու բնության կարդն ես:

Քոթոթն ուզում էր էլի բաներ ասել, բայց արջը նետվեց անտառապահի խոյերի վրա ու խփեց-գիրկն առավ աչքադրածին...

Երբ ձմեռը սարի ետևից տեսավ, որ արջը իր որջում ամեն ինչ ունի, թևերը բացեց ու փռեց սպիտակ գորգը: Ձերմակությունից քոթոթը վախեցավ, իսկ արջը նայեց մառանին. «Փառք աստծու, տարիուկեսվա պաշար կա ու կա, թեկուզ մի երկու օրով մի մարդ էլ հյուր գա, ոչինչ, թող գան, արջի օջախ է, աշխատողի օջախ է, ինչո՞ւ պիտի չլինի»:

Նրանք քնեցին: Թե արջին ու քո-

# Մայրիկիս երգը

ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

Երգում էր սարում մի զանգակ աղբյուր,
Հմայում, տանում լսողի խելքը:
Երգն այդ ծորում էր ջինջ, մաքրամաքուր...
Սակայն ուրիշ էր մայրիկիս երգը:

Իմ հորեղբայրը՝ մանկալ անվանի,
Անուշ երգում էր, մանին՝ պիրկ ձեռքը:
Երգը զնգում էր խրոխտ ու բարի,
Սակայն ուրիշ էր մայրիկիս երգը:

Արտը հասել էր՝ շնկշնկում անուշ,
Պարզ երևում էր՝ առատ էր բերքը:
Գիշերն հնձվորի երգն էր քաղցրանուշ...
Սակայն ուրիշ էր մայրիկիս երգը:

Մայրս դարդաշատ, կարդալ չգիտեր.
Երգով լալիս էր իր սրտի վերքը,
Աշխարհում երգեր ես շատ եմ լսել,
Սակայն ուրիշ էր մայրիկիս երգը:

Նկ. ԱՐՏԱՎԱԶԴ ՑԱՐԱԼՅԱՆԻ



թոթին ասելու բան ունեք, ՝գրեք, ահա հասցեն՝ Մոտկոր աշխարհ, Արջասար, Արջաձոր, Արջաորջ... Այսքանը որ գըրեք, նամակատարը կհասկանա, այն կըհանձնի անտառապահին, անտառապահըն էլ այն կհանձնի ըստ պատկանելույն: Վերջինս էլ կբացի ձեր նամակը և ուշադիր ու մինչև վերջ կկարդա:

Ու թե հարցնող լինի, թե ի՞նչ է գրված նամակում, արջը շատ ուրախ սրտով կպատասխանի, որ նամակում գրված էր. «Արջը բնության, անտառի, կյանքի զարդն է»: Եվ այն կհանձնի անտառապահին, որ կպցնի մի հարմար տախտակի վրա, իսկ տախտակը ամուր կըմեխի մի երևացող ծառի:

ՊԻՈՆԵՐԱԿԱՆ
և դպրոցական կյանք

# «ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՐԿՂԵՐ»

Արարատ գյուղի միջնակարգ դպրոցը 840 աշակերտ ունի: Ամռան ամիսներին, ինչպես ամենուր, բարձր դասարանցիները մեծ օգնություն են ցույց տալիս տնտեսությանը: Նրանց օրինակին հետևելով, միջին դասարանցիները նույնպես ուզում էին որևէ աշխատանք կատարել: Բայց Արարատյան դաշտավայրի կիզիչ արևի տակ ի՞նչ կարող էին անել: Բնական էր, որ կոլտնտեսությունը մերժեց պիոներների խնդրանքը: Տղաներից մեկը՝ Մանուկը ցածրաձայն ասաց.

— Արկղերն էլ հո արևի տակ չե՞ն պատրաստում, կամ ծանր աշխատանք չէ՞:

— Իսկ ձեր պատրաստած արկղերով տիկնի՞կ պիտի տեղափոխվի, թե՞ լոլիկ...

Կողքից արված կատակը կպավ աշակերտների ինքնասիրությանը: Նրանք՝ Սամվելը, Սեյրանը, Հովհաննեսը, Նշանը խնդրեցին, որ երկու օր թույլ տան փորձնական աշխատել՝ կստացվի, լավ, չի ստացվի, կգնան ամառանոցներում հանգստանալու:

Նրանց ընդառաջեցին, և պիոներները հենց գըրասենյակից գնացին փայտամշակման արհեստանոց:

Բաժանվեցին մի քանի խմբերի ու սկսեցին աշխատել: Սակայն, ինչպես պատահում է նման դեպքերում, հուզմունքից թե անփորձությունից, մուրճով ավելի հաճախ սեփական մատներին էին հարվածում, քան՝ մեխին: Մեխերն էլ մի տեսակ կամակոր ու անհնազանդ էին. կա՛մ ծռվում էին, կա՛մ դուրս ցցվում բարակ տախտակներից:

«Վարպետները» շուտշուտ փոխվում էին, բայց պատկերը նույնն էր: Պատանի հյուսնների բրիգադի հետագա գործունեությունը վտանգի տակ էր:

Օրվա վերջում, մուրճի հարվածներից կապտած, մեխերից ծակծկված, տնքացող մատները տրորելով նրանք տուն էին գնում, թողած մի քանի տասնյակ արկղեր. այսինքն այնքան, որքան մի վարպետը կմեխեր երեսունի փոխարեն...

Պարզ է, որ նման «հաջողության» դեպքում չես ուզենա աշխատանքի գընալ: Բայց գնացին և գյուղի ճանաչված հյուսնը սովորեցրեց նրանց սովորական-սով ո ր ա կ ա ն արկղեր մեխելու «գաղտնիքը»: Պետք էր ճիշտ պահել մեխը և հարվածել միայն մուրճի կենտրոնով:

Աշխատանքն սկսելուց մի քանի ժամ անց պիոներներն արդեն վարպետացել էին: Իսկ երրորդ-չորրորդ օրը «պիոներական արկղերից» գոհ էին նաև արհեստանոցի վարպետներն ու բրիգադավարները:

Երկու ամսվա ընթացքում միջին դասարանցիների պատրաստած հակարավոր մեծ ու փոքր արկղերով հուսալիորեն փոխադրվեց տասնյակ տոննա լոլիկ, խաղող, տանձ ու խնձոր: Իսկ իրենք լավ վարձատրություն ստացան: Միայն թե հիմա 5—7-րդ դասարանցիները ավելի շատ հպարտանում են ոչ թե վարձատրությամբ կամ կատարած աշխատանքով, այլ նրանով, որ չըվախեցան դժվարությունից և գյուղի համար կարևոր այդ արհեստին տիրապետեցին:

Դ. ՆՈՐԻՆ

# ՕԳՅՈՒՍՏ ՌՈԴԵՆ



Ֆրանսիայի հյուսիսում ծովեզերքը լի է գլաքարերով, որոնք մերթ կծիկ դարձած վիշապօձ, մերթ հսկայական արծիվ, սարսռազդու վհուկ, մերթ էլ կարծես տապալված ասպետ են հիշեցնում...

«Մի ժամանակ սրանք, երևի, կենդանի են եղել և չար կախարդը քարացրել է,— այսպես էր մտածում նորմանդացի ձկնորսի որդին՝ ամրակազմ մի տղեկ, որի անունը Օգյուստ էր։— Հենց որ մեծանամ, բոլորիդ կախարդանքից կազատեմ,— խոստացավ նա քարերին։— Դու նորից ասպետ կդառնաս, դու՝ վարազ, իսկ դու, արծիվ, դեպի երկինք կսուրաս, և քեզ նույնիսկ, վիշապօձ, կախարդանքից կազատեմ, թող բոլորն էլ իսկական, կենդանի վիշապօձ տեսնեն»։

Մի անգամ աստվածաշունչ կարդացող պապի տաղտկալի քրթմնջոցի տակ ննջելիս, Օգյուստն այսպիսի բառեր լսեց հանկարծ. «Եվ աստված կավից մարդ շինեց ու շունչ տվեց նրան»։

— Սովորակա՞ն կավից,— զարմացավ Օգյուստը։— Ա՜յ քեզ հրաշք։ Բայց չէ՞ որ մեր շուրջն ինչքան ասես կավ կա։

Առավոտյան նա կավից ծիծաղաշարժ մարդուկներ, գազաններ ու թռչուններ ծեփեց ու սկսեց փչել դրանց վրա։ Սակայն նրանք չէին կենդանանում... Բայց բոլորը, ում ցույց էր տալիս, զարմացած բացականչում էին. «Ա՜յ քեզ բան, կարծես կենդանի լինեն»։

«Ես նրանց իմ շնչով չկենդանացրի... Իսկ բոլորն ասում են, թե կարծես կենդանի լինեն»,— զարմանում էր Օգյուստը։

Նա, իհարկե, չգիտեր իր այն շնչի մասին, որը տաղանդ է կոչվում...



Օ. Ռոդեն — Կալեի քաղաքացիները

Տարիներ անցան, գյուղացի տղան, քչախոս, հզոր կազմվածքի տեր, կավ տրորելու, փորիչ բռնելու, քանդակներ ձուլելու սովոր ձեռքերով մարդ դարձավ, որի անունն էր քանդակագործ Օգյուստ Ռոդեն: Նա արդեն հայտնի է, նրա մասին խոսում են, գրում, որպես մի մարդու, որը նոր ուղիներ է բացել քանդակագործության արվեստում:

Մինչև Ռոդենը վարպետները ընդմանակում էին հնադարյան՝ հունական ու հռոմեական օրինակները: Արձանների դիրքերը պետք է վեհաշուք, հանգիստ լինեին, դիմագծերը՝ կատարյալ կանոնավոր: Կտրուկ շրջադարձերն ու շարժումներն անթույլատրելի էին: Քննադատում էին ամենաչնչին քերծվածքը, նյութի յուրաքանչյուր խորդուբորդությունը: Այս բոլորը Օգյուստ Ռոդենը մերժեց: Նա կավից ծեփում էր ու մարմարից կերտում ոչ թե աստվածներ ու հերոսներ, այլ կենդանի մարդիկ, իր ժամանակակիցներին, նրանց առանց գեղեցկացնելու, յուրաքանչյուրին իր բնորոշ առանձնահատկություններով: Այդ թվում՝ և՛ տկար ծերունիներ, և՛ կնճռոտ դեմքերով ու ջլուտ, հոգնատանջ ձեռքերով նիհար, հյուծված մարդիկ:

«Կալեի քաղաքացիները» քանդակախումբը իսկական փառք բերեց Ռոդենին: Նրանում պատկերված են ֆրանսիական Կալե քաղաքի պատվավոր յոթ քաղաքացներ, որոնք երկարատև պաշարումից տանջված քաղաքը փրկելու համար հանձնվում են անգլիացի զավթիչներին:

Ահա գլուխը խոնարհած ծերունին հանուն իր որդիների ու թոռների փրկության, գնում է մահապատժի: Ահա քաղաքի դարպասի բանալին ձեռքին բռնած մեկը, ինչպիսի՜ արժանապատվություն և որքա՜ն արհամարհանք է արտահայտում թշնամու նկատմամբ հպարտորեն բարձր պահած նրա գլուխը: Բայց ահա և կենսական ուժերով առլեցուն երիտասարդը: Նա դեմքը շուռ է տվել, չի կարող նայել կառափնարանին: Նա հոժարակամ մահվան ընդառաջ է գնում, բայց վերջին պահին գուցե ափսոսում է իր վճռի համար, չէ՞ որ դեռ այնքա՜ն երիտասարդ է...

Փարիզյան Ռասպայ և Մոնպառնաս բուլվարների անկյունում ֆրանսիացի մեծ գրող Օնորե Բալզակի հուշարձանն է կանգնած... Դա հանդիսավոր արձան չէ: Գրողը պատկերված է տնային տրորված խալաթով, ծանրամարմին ու տգեղ, ուռած դեմքով ու խռիվ մազերով: Այստեղ էլ քանդակագործը կտրականապես հրաժարվել է գեղեցկացնելուց: «Ես ուզում եմ, որ բոլորը տեսնեն ոչ թե դափնեպսակը գլխին մի անհոգի տիկնիկ, այլ աշխատավոր-գրողին»:

Ժամանակակիցների վկայությամբ Ռոդենը մանրամասն ուսումնասիրել է Բալզակի ապրելակերպը, նրա սովորությունները, աշխատելու առանձնահատկությունները:

Բալզակն աշխատում էր գիշերները, նա խալաթ էր հագնում, իր աշխատասենյակում մոմեր վառում, ամուր փակում պատուհանները, որպեսզի փողոցից ոչ մի ձայն չլսվի և աշխատում էր, աշխատում մինչև լույս: Եվ միայն երբ արևի ճառագայթները ներս էին թափանցում վարագույրների միջով, գրողը հեռանում էր գրասեղանից:

«Սա հենց այն է, որ պետք է ինձ»,— վճռեց Ռոդենը:

Եվ քանդակագործն սկսեց կերտել «առավոտյան», սեղանի մոտից վեր կացած Բալզակին:

— Ի՞նչ... Ո՞վ է սա,— Գեղարվեստի դպրոցի դասատու ծեր քանդակագործը զայրույթից նույնիսկ վեր կացավ տեղից, երբ Ռոդենը պաստառը ցած նետեց արձանի վրայից:

— Օնորե Բալզակը,— պատասխանեց Ռոդենը:

— Դուք ուզում եք ասել, որ այս բութ անտաշը Բալզա՞կն է:

— Այո՛, Բալզակն է,— հաստատակամ պատասխանեց Ռոդենը,— միայն թե աշխատավոր Բալզակը, իսկ մարդիկ, ինչպես ձեզ հայտնի է, ֆրանկով ու դափնեպսակով չեն աշխատում:

Գեղարվեստի դպրոցի մի քանի ծեր դասատուներ միայն թշնամաբար ընդունեցին հուշարձանը, իսկ առաջադեմ նկարիչներն ու քանդակագործները ֆրանսիական արվեստի նոր՝ աչքի ընկնող ստեղծագործությունը ընդունեցին որոտընդոստ ծափահարություններով:

Երկար ժամանակ Փարիզի քաղաքային իշխանությունները չէին ուզում կանգնեցնել այս արձանը, բայց ի՞նչ փոթորիկ բարձրացավ, երբ վերջապես բացվեց այն:

— Այլանդակությո՛ւն է: Խայտառակությո՛ւն,— վրդովվում էին բուրժուաները:

— Մեծ Բալզակը՝ գիշերային խալաթո՞վ... Սա... սա ուղղակի վիրավորակա՞ն է:

— Մեծ գրողին ֆրակով, ցիլինդրով և Պատվավոր լեգիոնի շքանշանով էր պետք պատկերել:

Բայց Ռոդենը չէր նահանջում. նա շարունակում էր ընթանալ իր ճանապարհով:

Ռոդենի հռչակը տարածվում էր, նրան ճանաչում էին Ֆրանսիայի սահ-



Օ. ՌՈԴԵՆ — Օնորե դը Բալզակ



*Օ. ՌՈԴԵՆ — Մտածողը*

մաններից շատ հեռու: Բազմաթիվ երկրներից նրա մոտ ուսանելու էին գալիս երիտասարդ տաղանդավոր քանդակագործներ: Դեռևս նրա կենդանության օրոք կառավարությունը բացեց նրա թանգարանը Փարիզում:

Քանդակագործը հաճախ է գալիս հարազատ վայրերը և, ինչպես մանկության օրերին, թափառում ծովեզերքին իր հին բարեկամ-գլաքարերի միջև:

— Ահա քար-արծիվը,— շշնջում էր նա,— ահա և վիշապօձը, վարազը, ասպետը...

Այժմ էլ քանդակագործը կանգնել է գլաքարի առջև, աշխատում է կռահել նրա գաղտնիքը: Եվ ահա նրա երևակայության մեջ աստիճանաբար ձևավորվում է հսկայի կերպարանքը՝ նա նստած է կորամեջք, կզակը ձեռքին հենած, նրա մտորումները անուրախ են: Գուցե այսպե՞ս է ծագել Ռոդենի մտքում «Մտածողի» կերպարը:

Ֆրանսիական Մեդոն փոքրիկ քաղաքի գերեզմանատանը Ռոդենի շիրիմին «Մտածողի» կերպարանքն է վեր խոյանում: Ինչ-որ բանով նա նման է քանդակագործին: Այո՛, սա, թերևս, ինքը Ռոդենն է: Նորմանդիայի գյուղացիների ժառանգի հզոր մարմինն է ու արվեստագետի, մտածողի գլուխը:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



«ԼՈՒՍԱԲԵՐ»-ից

## ԱՄԵՆԱԼԱՎ ՎԿԱՅԱԿԱՆԸ

Մի վաճառական լրագիրներում հայտարարել էր, թե իր խանութի համար մի աշակերտ է հարկավոր:

Շատ մարդ եկավ վարձվելու. վերջապես վաճառականը ընտրեց մեկին:

— Ասա՛, խնդրեմ,— հարցրեց մի ծանոթ,— ինչո՞ւ դրան ընտրեցիր: Ո՛չ վկայական ուներ, ո՛չ էլ ճանաչում էիր: Ուրիշները հրաշալի վկայականներ բերին, բայց դու ճամփու դրիր:

— Սխալվում ես,— ասավ վաճառականը,— Այս տղան շատ վկայականներ ուներ: Սենյակը մտնելուց առաջ ոտները լավ սրբեց ու դուռը ծածկեց առանց թխկացնելու. ուրեմն մաքրասեր է ու կարգապահ: Իր նստած աթոռից վեր կացավ ու տեղ տվավ ներս մտնող կաղ մարդուն. ուրեմն բարեսիրտ է ու հարգում է ավելի հասակավորին: Դեռ շեմքին՝ գլխարկը հանեց, արագ ու կտրուկ պատասխաններ էր տալիս իմ հարցերին. ուրեմն քաղաքավարի է ու աչքաբաց: Կռացավ, բարձրացրեց գիրքը, որ դիտմամբ ձգել էի հատակին, մինչդեռ ուրիշները դեմ էին ընկնում գրքին կամ կողքից անցնում: Հանգիստ սպասում էր իր հերթին, չաշխատելով ուրիշների առաջը կտրի. ուրեմն լավ կրթված տղա է: Շորերը լավ սրբված էին, իսկ երեսն ու ձեռքերը մաքուր: Ի՞նչ ես կարծում, այս բոլորը միասին լավագույն վկայականը չի՞:

## Թոռնիկները

ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ

Հիվանդ տատը մի անգամ
Ջուր խնդրեց իր թոռներից.
Սաթոն նայեց Էդիկին,
Էդոն նայեց Պետիկին,
Պետոն նայեց Նորիկին,
Նորոն նայեց Օնիկին,
Օնոն նայեց Բենիկին,
Բենոն նայեց Անիկին,
Անոն նայեց Սաթիկին,
Սաթոն նայեց տատիկին...
Հիվանդ տատն էլ սուսուփուս
Տնքտնքալով ելավ դուրս,
Եվ լի բաժակը ձեռքին
Եկավ դիմեց թոռներին.
— Ո՞վ իմանա, իմ բալե՛ք,
Գուցե ինձնից ծարա՞վ եք:






# ՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ԿԱՆԱՆՑ

«Արևոտ Եվրոպայի մռայլ անկյուն» անվանեց մի լրագրող արևելյան Հունաստանի՝ Ագիոն-Օրոս թերակղզում գտնվող տարօրինակ մինի-պետությունը: Ասենք, լրագրողները հազվադեպ են ընկնում այդ դժվարամատչելի լեռնային շրջանը, ուր ժամանակն, ասես, կանգ է առել: Անհիշելի ժամանակներից ի վեր այդտեղ բնակություն են հաստատել մենակյաց կուսակրոնները, որոնց VII դարում Բյուզանդիայի Կոստանդին կայսրը նվիրեց 886 քառ. կմ տարածքով այդ հողերը: Հետագայում երկան եկած ուղղափառ եկեղեցիներն այստեղ միավորվեցին՝ ստեղծելով փոքրիկ Ագիոն-Օրոս պետությունը, որը մինչև օրս էլ որոշակի ինքնավարություն ունի, չնայած ձևականորեն մտնում է Հունաստանի կազմի մեջ: Թզուկ պետությունը վանականներն են կառավարում, աչալուրջ հսկելով, որ ոչ մի կին ոտք չդնի նրա տարածքը՝ դա արգելված է տեղական օրենքներով:

Ագիոն-Օրոսում 1974 թվականին կային 1900 մարդ. 1881 վանական և 69 գյուղացի: Վերջիններիս կանայք ու երեխաներն ապրում են կուսակրոնների պետության սահմաններից (որը պատված էր փշալարերով) այն կողմ: Միջնադարյան օրենքներով ղեկավարվող Ագիոն-Օրոս պետությունն ապրում է տեղում աճեցվող լոբու և կղերականների նկարած սրբապատկերների վաճառքով:

# ԱՆԿԱԽ ԴՈՄԻՆԻԿԱՆ




...1493 թվական: Իսպանական թագավորը պալատում ընդունում է իր թագավորությանը նորանոր անդրծովյան տիրույթներ միացրած խիզախ Քրիստափոր Կոլումբոսին: «Իսկ ինչպիսի՞ն է այդ Դոմինիկան»,— հարցնում է տիրակալը ծովագնացին: Կոլումբոսը վերցնում է թղթի մի թերթ. ճմրթում դարձնում է գունդ և դնում սեղանին. «Ահա այսպիսին է, ձերդ մեծություն»: Այսպես նա պատկերեց Կարիբյան ծովի արևելյան մասում գտնվող լեռնահրաբխային կղզին:

Հետագայում, Դոմինիկային տիրելու համար պատերազմել են Անգլիան ու Ֆրանսիան: Թանկարժեք մրցանակին տիրացավ այն ժամանակվա «Ծովերի թագու-

հին»՝ Անգլիան: Սակայն դոմինիկացիները չըհաշտվեցին գաղութային կարգերի հետ: 1967 թըվականին Դոմինիկայի ժողովուրդը ինքնավարության իրավունք նվաճեց և այդ ժամանակվանից ինքն է լուծում իր երկրի ներքին հարցերը: Միայն արտաքին քաղաքականության ու պաշտպանության հարցերն էին վըճռվում Լոնդոնում:

Սակայն նման ենթակայությունն էլ ազատասեր դոմինիկացիների սրտովը չէր: Նրանք շարունակեցին պայքարը և հաղթեցին: Անկախ պետությունը կրում է Դոմինիկյան Միություն անունը:

Դոմինիկայի տարածքը մեծ չէ՝ 790 քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ 75 հազար մարդ: Կղզիաբնակների հիմնական զբաղմունքը գյուղատնտեսությունն է (աճեցնում են բանան և ցիտրուսային կուլտուրաներ): Դոմինիկացիների մեծամասնությունը Աֆրիկայից գաղութարարների բերած ստրուկների սերունդներն են:

Ձեզանից շատերը երևի գիտեն, որ կա նաև Դոմինիկյան հանրապետություն: Այն գտնվում է Հաիթի կղզում: Այս երկու պետությունները չպետք է իրար հետ շփոթել:



# ԱՐԴՅՈ՞Ք ԻՐԱՎԱՑԻ ԵՆՔ

Կենդանական աշխարհը ուսումնասիրելիս գիտնականները երբեմն անսպասելի հետևությունների են հանգում: Պարզվում է, որ շատ կենդանիներ ամենևին էլ այնպիսին չեն, ինչպիսին պատկերացնում էինք: «Փնթի է, շատակեր է, ծույլ է»,— ասում ենք խոզի մասին, ամենաբացասական վիրավորական հատկություններ վերագրելով դարեր շա-

րունակ մարդուն հավատարմորեն կերակրող այդ կենդանուն: Բայց արդյո՞ք իրավացի ենք:

Կենդանաբաններից շատերն այժմ պնդում են, որ խոզը ընտանի կենդանիներից... ամենախելացին է: Խոզին, ասում են նրանք, կարելի է սովորեցնել այն ամենը, ինչ շանը, բայց ավելի կարճ ժամանակում: Դեռևս 18-րդ դարում մի նշանավոր խոզ է եղել Անգլիայում, որ դիտելով խուզարկու շներին, ինքնուրույն սովորել է նրանց բոլոր պարտականությունները: Իսկ Ֆլորիդայում մեկ ուրիշ խոզ հավատարմորեն պահպանում էր իր տիրոջ ցանքատարածությունները:

Սխալ է, թե խոզերը սիրում են թավալվել ցեխի ու կեղտաջրերի մեջ: Մաշկի վրա ունենալով քիչ քանակությամբ քրտնագեղձեր, նա շոգից պաշտպանվում է յուրաքանչյուր հնարավոր ձևով: Ընտրության հնարավորության դեպքում, խոզը գերադասում է մաքուր ջուրը, և նույնիսկ սովորում է օգտվել ցնցուղից: Նշանակում է, իզուր ենք խոզին մեղադրում անմաքրասիրության մեջ: Ավելին, խոզը իր կերամանի ու քնելու տեղի շուրջը միշտ ստեղծում է այսպես ասած սանիտարական գոտի՝ իր բնական կարիքները հոգում է որքան հնարավոր է հեռու, ինչը չի կարելի ասել մյուս ընտանի կենդանիների մասին: Խոզը, ճիշտ է, շատ է ուտում, և հաճախակի, բայց երբեք չափը չի անցնում: Եթե մարդը սնվեր նույն ռեժիմով, ասում են կենդանաբանները, ով գիտե, գուցե խուսափեր շատ ու շատ հիվանդություններից: Խոզը երբեք խոշոր պատառներ կուլ չի տալիս, ընդհակառակը, ծամում է ճիշտ սնման բոլոր կանոնների համաձայն, բավականություն ստանալով ծամածից: Նա դնչով փորփրում է իր կերը ոչ թե պարապությունից, այլ որովհետև ուզում է ավելի լավ զգալ նրա բույրը, որը ախորժակ է բացում: Ճիշտ չէ, թե խոզն ուտում է ինչ պատահի: Այսպիսի փորձ են արել. խոճկորի առաջ լցրել են 243 տեսակի մրգեր ու՝ բանջարեղեն: 171 տեսակները խոզը «մերժել է», դրանով հաստատելով իր երկրպագուների այն տեսակետը, որ ընտրության հնարավորության դեպքում խոզը միշտ ընտրում է լավագույնը: Այո, խոզերը վերին աստիճանի նրբաճաշակ են: Ֆրանսիայի Պերիգորդա շրջանում աճում է աշխարհի ամենալավ սև գետնասունկը, որի մի կիլոգրամը առասպելական գին ունի: Ֆերմերները անհիշելի ժամանակներից այդ սունկերը գտնում են խոզերի օգնությամբ: Գետնասունկը աճում է հողի տակ, 5—25 սմ խորության վրա, բայց խոզը նրա հոտը զգում է դեռևս 6 մետրը հեռավորությունից: Վերջին ժամանակներս այդ նպատակներով ավելի հաճախ օգտագործում են շներին, թեև նրանք առնում են միայն շատ հասուն (և պակաս արժեքավոր) սնկերի հոտը: Ամբողջ գաղտնիքն այն է, որ շները չեն փորձում «սեփականել» գտած գետնա-



սունկը, իսկ խոզի կարծիքով, իր գտածը, ինքը պետք է ուտի:

Խոզերը ալարկոտ են միայն որպես մսացուներ բուծվելիս: Մարզված խոզը հիանալի վազում է, պարում, սուզվում ջրի տակ: Բայց նրան կարելի է միայն վարժեցնել փաղաքուշ վերաբերմունքով: Պատժամիջոցներով խոզին ոչ մի կերպ չես ստիպի որևէ բան անել:

Թերևս միայն «հարբած խոզի է նման» արտահայտությունն է համապատասխանում իրականությանը, որովհետև կենդանիներից միայն խոզն է ընդունակ սիստեմատիկ կերպով և մինչև գիտակցությունը կորցնելու աստիճանի հարբել և ժամանակի ընթացքում ալկոհոլիկ դառնալ: Բայց նույնիսկ այս ոչ դրական հատկությունը ծառայեցնում են մարդուն՝ խոզերի միջոցով են ստուգում ալկոհոլի ազդեցությունը մարդու վրա: Այժմ արդեն բոլորն էլ ընդունում են, որ կապիկից հետո խոզը իր անատոմիական կառուցվածքով մարդուն ամենամոտիկ կենդանին է: Արդեն տասը տարի է, ինչ խոզի սրտի փականները դրվում են այդ հիվանդությամբ տառապող մարդկանց սրտի վրա: Այժմ աշխարհում 60 հազար մարդ ապրում են այդ փականների շնորհիվ:

Ավստրալիացի գիտնականները ուսումնասիրել են խոզերի արտաբերած ձայները և եկել են այն եզրակացության, որ իրենց խռխռոցով խոզերը կարողանում են արտահայտել ամենաբազմապիսի զգացունքներ ու տրամադրություններ: Իսկ միակ տհաճ բանը՝ ականջ ծակող ճղճղոցը, իրոք վնասակար է, որովհետև հասնում է 100—110 դեցիբելի: Բայց ավստրալիացի գիտնականները գտնում են, որ խոզը երբեք հաճույքից և ուրախությունից չի ճղճղում, այլ միայն այն ժամանակ, երբ ցավ է զգում կամ հուսահատվում է:




ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

Պապիկի մեղվանոցը գյուղի ծայրին էր: Նրանից քիչ հեռվում կոլտնտեսության պտղատու այգիներն էին, իսկ ավելի հեռվում, սարի ստորոտում, կորնգանի և առվույտի ցանքսերն էին տարածված: Այնտեղից էլ մեղուները նեկտար էին բերում և մեղուների միջոցով էլ կատարվում էր այդ կուլտուրաների փոշոտումը: Ձմռան ընթացքում պապը մեկ շարունակ ասում էր՝ ա՜յ, մի՛ քիչ էլ սպասեք, գարունը գա, ծառերը ծաղկեն, ծաղիկները բացվեն, մեղուները կթռչեն ծաղկից ծաղիկ նեկտար հավաքելու, այն ժամանակ...— և երբեք չէր ավարտում միտքը, որպեսզի իմանայինք, թե ինչ կլինի այն ժամանակ:

Վաղ առավոտից պապիկն ու հայրիկը մեղվի ընտանիքները դուրս էին հանում ձմեռանոցից, հանում էին զգուշությամբ, պատգարակի վրա դրված, մենք էլ ոգևորված պտտվում էինք նրանց շուրջը՝ ցանկանալով ամեն կերպ օգտակար լինել, բայց, հավանաբար, ավելի խանգարում էինք մեր բազմապիսի հարցերով:

Մեզ համար հետաքրքիր էր տեսնել, թե մեղուները ողջ ձմեռը փեթակի մեջ ապրելուց հետո, ինչպես էին դիմավո-

յու ապատության առաջին ռոպեները:

— Պապի՛կ, պապի՛կ, մեղուները որ դուրս գան, չփոթի՞ իրենց փեթակները:

— Ծուխ կտանք մեղվի ընտանիքներին,— ժպտում էր պապը,— որպեսզի արկանոցները բացելուց հետո նրանք միանգամից, խառնիխուռն դուրս չթռչեն և չմոռանան իրենց փեթակները:

Ծխամորի միջի աթարը վառելով նա պատրաստվեց ծուխ տալ մեղվի ընտանիքին:

Այսպես, արկանոցները բացելուց հետո մեղուները սկսեցին հանգիստ, առանց իրար խառնվելու դուրս թռչել փեթակներից:

— Պապի՛կ, պապի՛կ, այս փեթակից ոչ մի մեղու դուրս չի գալիս,— հանկարծ մեղվանոցի մյուս ծայրից լսվեց եղբորս տագնապած ձայնը:

Պապը ծխամարը ձեռքին՝ շտապեց այն կողմը, բայց եղբայրս, անհամբեր ու հետաքրքրությամբ, արդեն կգուշորեն բարձրացնում էր փեթակի կափարիչը... Այնտեղ ո՛չ մեղու էր շարժվում, ո՛չ բզզոց էր լսվում: Պապը փակելով փեթակը, շտապ կանչեց հայրիկիս:

— Ի՞նչ է պատահել պապի՛կ,— անհանգստացանք և մենք:

— Հանգել է,— մռայլ ասաց պապը:

— Ո՞նց թե հանգել է, կրա՞կ է, ի՞նչ է:

Հայրիկիս հետ փեթակը կրկին ձմեռանոց փոխադրելուց հետո, պապիկը բացատրեց, որ մեղուները ոչնչացել են հավանաբար հիվանդությունից և եթե այդ փեթակը չհեռացնեին մեղվանոցից, ապա մեղվանոցը ամբողջովին կարող է վարակվել:

Մենք պապին օգնեցինք բոլոր փեթակների հատակները մաքրել, պապը շատ-շատ գոհ էր մեկնից:

Իսկ շուրջը գարո՜ւն էր, գարո՜ւն...

Ամենուրեք, ինչքան աչքդ կտրեր, սար, դաշտ ու ձոր կանաչ էին հագել և այդ կմրուխտյա ծովում՝ մեղուների ոսկե ամպերով պարուրված մեղմորեն ծփում էին ծաղկած այգիները:

Հեքիաթային օրեր էին...

Ինչքա՜ն դուրեկան էր արևոտ այդ օրերին մեղվանոցի օդը, ամենուրեք տարածված էին ծաղիկների, մեղրի, այլևայլ գրավիչ բուրմունքներ:

Ամբողջ օրեր էինք անցկացնում մեղվանոցում՝ մեղուների ախորժելի բզզոցի ներքո (միալար այդ մեղեդին որպես քաղցր մի հուշ մինչև օրս էլ հնչում է իմ ականջներում): Երկար կանգնում էինք փեթակների արկանոցների մոտ՝ հմայված դիտում, թե ինչ է կատարվում այնտեղ: Իսկ այնտեղ կյանքն էր եռում, մեղուների առօրյա հոգսերով, պայքարով ու ուրախություններով:

Աշխատավոր մեղուները անընդհատ թռչում էին դեպի Կոլտնտեսության պտղատու այգիները, իսկ ավելի ուշ՝ դեպի կորնգանի և առվույտի ցանքսերը և բեռնավորված նեկտարով ետ էին վերադառնում տուն՝ փեթակները:

Օրվա ամենատաք ժամին անբան բոռերն էլ էին դուրս թռչում, որպեսզի թևերն անհոգ թափահարեն օդում:

Պահակ մեղուները պաշտպանում էին փեթակի մուտքը օտար մեղուներից և վտանգի դեպքում կռվի էին բռնվում: Եվ այսպես, հոսում էին օրերը մեղվանոցում, իսկ մեր ծեր, իր խոր վիշտը սրտում խնամքով անթեղած պապիկը միշտ առույգ, բարեհոգի, կատակասեր, արթուն աչքով հսկում էր նրանց... Մի օր էլ օդը թնդաց եղբորս կանչերից, ամբողջովին կծոտված, բարձրաձայն լալով, նա վազեց մեկ մոտ:

Նա մոտեցել էր փեթակներից մեկին, որտեղ,

ինչպես նրան թվացել է, կռիվ էր տեղի ունենում, ու հանկարծ, գրգռված մեղուների մի ամբողջ խումբ հարձակվել էր վրան:

— Ա՜յդ էլ քո աշխատավորները... ա՜յդ էլ քո գովական ճարտարապետները,— լալով հանդիմանում էր եղբայրս պապին:

Պապը նրան հանգստացնելով շտապեց դեպքի վայրը, մենք էլ նրա ետևից: Պարզվեց, որ մեղուների պայքարը շարունակվում է:

Շատ մեղուներ էին հավաքված մի փեթակի մոտ, որտեղ, ինչպես հետո պապն ասաց, թույլ մի ընտանիք էր տեղավորված: Օդը լցված էր նրանց գրգռված բզզոցով: Թույլ ընտանիքի պահակ մեղուները չէին կարողացել դիմադրել ու արգելել գող մեղուների մուտքը փեթակ և հիմա գողերը թալանում էին աշխատավոր մեղուների կերապաշարը:

Եղբայրս, որ դեռ մեկընդմեջ հեծկլտում էր, լսելով գող մեղուների մասին, մոռացավ իր ցավերը:

— Ինչպե՞ս, պապի՛կ, գող մեղուներ են լինո՞ւմ:

— Լինում են, տղա՛ս,— տնքաց պապը,— լինում են և պետք է նրանց դեմ պայքարել, պետք է պաշտպանել թալանված թույլ ընտանիքը:

Մենք բոլորս, անգամ խեղճ, կծոտված եղբայրս, որի մի աչքն ամբողջովին կորել էր ուռուցքների մեջ, լի էինք թույլին օգնելու, գող մեղուների դեմ մարտնչելու վճռականությամբ: Եվ մի մարդու նման նայեցինք պապին՝ ինչպես զինվորականներն են մարտից առաջ նայում իրենց կոմանդիրին: Պապը մի քիչ պաղեցնելով մեր կռվի նետվելու ավյունը՝ ասաց, որ առայժմ բավական է միայն մի փունջ խոտով ծածկել թալանված ընտանիքի արկղը: Պապը հույս ուներ, որ խոտը կօգնի թույլ ընտանիքի պահակներին, կդժվարացնի գող մեղուների մուտքը փեթակ, բայց... Ըստ երևույթին գողերը փորձված էին, խոտը չխանգարեց նրանց: Պահապան մեղուները նորից խեղճ գրտնվեցին գողերի մոտ, և մենք, դարձյալ պապի խորհրդով, ավելով սառը ջուր ցանեցինք կռվողների վրա: Պապն ասում էր, որ գողերին կթվա, թե անձրև է գալիս, և նրանք, դադարեցնելով կողոպուտը, կշտապեն իրենց փեթակը: Եվ, իրոք, այդպես էլ եղավ: Հարձակումը դադարեց, մեղվի ընտանիքը փրկվեց: Ճիշտ է, բոլորին էլ խայթեցին գողերը, բայց մենք, ուրախությունից այնքան էլ ցավ չէինք զգում:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



# ԱԼԼԱ ՊՈՒԳԱՉՈՎԱ

«Մելոդիա» ֆիրման մի քանի անգամ, մեծ տպաքանակներով հրատարակել ու վերահրատարակել է Ալլա Պուգաչովայի «Հոգու հայելին» ձայնասկավառակների ալբոմը: Սա այն բացառիկ դեպքերից է, երբ ձայնասկավառակը գնում են երաժշտասեր բոլոր խավերը՝ թե՛ Բըրամս, Պրոկոֆև ու Գրիգ լսողները և թե՛ մասսայական ունկնդիրները:

Պուգաչովան ծնվել է Մոսկվայում 1949 թվականին: Դպրոցն ավարտելուց հետո սովորել է Իպոլիտով-Իվանովի անվան երաժշտական ուսումնարանի խմբավարական բաժնում: Այդ ժամանակից էլ սկսել է երգել: Սկզբում միայն իր համար՝ հաճախ երեկոները մեն-մենակ փակվում էր դասարանում ու երգում, նաև երաժշտություն հորինելու փորձեր էր անում: Այնուհետև ելույթ է ունենում մեկ անգամ ռադիոյով, ապա՝ «Յունոստ» ռադիոկայանի ագիտբրիգադի հետ ճամփորդում է Արևմըտյան Սիբիրի կոմերիտական- երիտասարդական կառույցներով:

Լայն ճանաչում բերեց նրան 1975 թվականին Բուլղարիայում կայացած «Ոսկե Օրփեոս» երգի միջազգային փառատոնը, ուր նա հաղթող դարձավ «Առլեկինո» երգով...

— Բավական չէ երգը պարզապես երգելը,— ասում է երգչուհին,— ձայնը, երաժըշտությունը կատարման մի մասն են կազմում միայն: Մեծ տեղ պետք է տալ հանպատրաստից ստեղծագործելուն, այլապես երգն անկենդան կհնչի: Միշտ են ասում, թե երգը կարելի է ձայնագրել, բայց անհնար է նոտագրել: Ինչ-որ բան կա նաև նոտաների արանքում, ուր ամեն երգիչ դնում է միայն իրենը:

Պուգաչովայի կատարմամբ երգը սոսկ երաժըշտությամբ պարուրված բառեր չեն, այլ կյանքի մի պահ, մի հարազատ ու ծանոթ պատկեր: Պուգաչովայի երգը նաև... երեք րոպեանոց ներկայացում է: Երգի ռեժիսուրան նրա կատարման չափազանց կարևոր մասն է կազմում: Ալլան այժմ թատերական արվեստի ինստիտուտի ռեժիսորական ֆակուլտետի ուսանողուհի է: Երգչուհի՝ ռեժիսորական թեքումով ու նաև կինոդերասանուհի: Նա նկարահանվել է «Կին, որը երգում է» ֆիլմում:

Ալլա Պուգաչովայի երգերը իր ժամանակակիցների հույզերի ու մտքերի արձագանքներն են:

«Երգն օժտված է հսկայական ազդեցությամբ,— ասում է նա,— և ես ձգտում եմ, որ իմ համերգներից հետո մարդիկ ավելի մաքուր, ավելի բարի ու ավելի գեղեցիկ դառնան»:

# ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻՑ ՈՎ ԻՆՉ




Իտալացի կոմպոզիտոր, դիրիժոր և մանկավարժ Ջուզեպպե Սարտին (1729—1802) ստեղծագործում էր միայն գիշերները, խորին լռության մեջ, ընդարձակ ու կահույքից ազատ սենյակում, իսկ առաստաղից կախված փոքրիկ ճրագը շատ աղոտ լույս էր սփռում:

Խորհրդավորություն, լռություն, ազատություն՝ ահա ստեղծագործելու նրա պահանջները:

Ֆրանսիացի նշանավոր բնախույզ Ժորժ Լուի Լեկլերկ Բյուֆֆոնը (1707—1788) գրելու պատրաստվելիս զուգվում էր՝ ասես պարահանդեսի պիտի գնար: Գանգրացված ու օծված կեղծամը գլխին, սուսերակիր, թևքերին շքեղ ժանյակներ՝ նա հանդիսավորությամբ սենյակից սենյակ էր ճեմում: Նրա տան բոլոր սենյակներում գրասեղան էր դրված, վրան՝ թանաքաման, թուղթ: Գիտնականը րոպեաչափ նստում էր, մի քանի տող գրում, ապա կրկին դանդաղ ու սիգաճեմ անցնում առաջ:

Իտալացի նշանավոր կոմպոզիտոր Դոմենիկո Չիմարոզան (1749—1801), հրավիրում էր մտերիմներին և նրանց խոսք ու զրույցի ժամանակ, ինքը ևս անընդհատ մասնակցելով խոսակցությանը, հորինում էր իր երկերը: Այսպես են ստեղծվել նրա «Հորացիոս», «Գաղտնի ամուսնություն» և ուրիշ օպերաները:

Շատ վաղ որբացած՝ քարտաշի որդու, Պետերբուրգի արքունական կապելմեյստերի, ապա 1799 թվականի նեապոլիտանական հայրենասերների ապստամբության մասնակցի ու Պորտենոպեյան հանրապետության հիմնի հեղինակի համար ստեղծագործելու այդ եղանակն, ըստ երևույթին, պիտի համարել օրինաչափ:

# ՊԵՍ ԷՐ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ

ՎՈԼՏԵՐ

V.

Ֆրանսիացի գրող, փիլիսոփա և պատմաբան Մարի Ֆրանսուա Արուե Վոլտերը (1694—1778) միաժամանակ գըրում էր մի քանի ստեղծագործություն, որոնց ձեռագրերը խնամքով դասավորված էին գրասեղանի վրա։ Երբ նըստում էր աշխատելու՝ նախապես չէր իմանում, թե ձեռագրերից որը պիտի շարունակի։ Իսկ գրասեղանի վրա լինում էր թե՛ վեպ, թե՛ ողբերգություն, թե՛ պոեմ։ Երկընտրանքը երկար չէր տանջում նրան։ Վոլտերը պահի թելադրանքով վերցնում էր ձեռագրերից մեկը և շարունակում ընդհատված տեղից։

Իր աշխատասենյակում լրացուցիչ ոչ մի աթոռ չէր պահում, որպեսզի այցելուները երկար չզբաղեցնեն իրեն։

ԴԻԴՐՈ

D.

Ֆրանսիացի գրող և լուսավորիչ-փիլիսոփա Դենի Դիդրոն (1713—1784) ստեղծագործելիս մոլեգնում էր. սենյակից սենյակ էր վազում, թափահարում էր ձեռքերն ու գոռգոռում։ Եթե նրա տան պատուհանները բաց էին լինում՝ հաճախ կառքերը կանգ էին առնում և ուղևորներն ու կառապանները շտապում էին տեղեկանալ, թե ինչ աղմուկ է, արդյոք ինչ է պատահել։

Աշխատանքի պահին Դիդրոյի համար արտակարգ դեր էր խաղում կեղծամը... պոկում էր գլխից, վեր նետում, շըպըրտում ցած, ոտքերով տրորում էր, ապա կրկին դնում գլխին։

ԼԱՖՈՆՏԵՆ

L.

Ֆրանսիացի նշանավոր բանաստեղծ ու առակագիր Ժան Լաֆոնտենը (1621—1695) իր հռչակավոր առակները հորինում էր տեղատարափ անձրևի տակ։ Առանց գլխարկի, կեղծամը հանած, ժամերով թափառում էր փողոցներում, բարձրաձայն արտասանում էր նոր մտահըղացումը. վիճում էր ինքն իր հետ, մոլեգնորեն դոփում էր գետինը և թափահարում ձեռքերը։




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-88, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул, Кармир банаки, № 15.

# № 8 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը՝ ՍԵՐԳԵՅ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

---

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

---

ՎՖ 06067։ Պատվեր 1028։ Տպաքանակ 51144։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ $70 \times 100^{1}/_{16}$։ Հանձնված է արտադրության 24/VI 1980 թ.։ Ստորագրված է տպագրության 15/VIII 1980 թ.։

---

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։






*Ո՞րն է ծաղրածուի պատկերի կեսը*







*Գտեք տարբերությունները*

## № 7 ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԳԱՂՏՆԱԳԻՐ № 7

# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

**ՄԱՐԶԱՁԵՎԵՐ**

**1. Սուսերամարտ։ 2. Բռնցքամարտ։ 3. Ֆուտբոլ։ 4. Բասկետբոլ։ 5. Վոլեյբոլ։ 6. Խոտի հոկեյ։ 7. Ջրագնդակ։ 8. Նետաձգություն։ 9. Ձիասպորտ։ 10. Մարմնամարզություն։**

**ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ՔԱՂԱՔՆԵՐ**

**Հռոմ, Փարիզ, Լոնդոն, Մեխիկո, Մոնրեալ, Հելսինկի, Անտվերպեն, Սենտ-Լուիս, Աթենք, Տոկիո, Բեռլին, Մոսկվա, Մյունխեն, Ստոկհոլմ, Լոս-Անջելոս, Ամստերդամ, Մելբուրն։**

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԵՐԵԽԱՆԵՐԸ



ԼԱՈՒՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ, 14 տ., ԼՂԻՄ, Շուշիի շրջ., գ. Ղարաղշլաղ



ՌՈԲԵՐՏ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ, 15 տ., ԼՂԻՄ, Հադրութի շրջ., գ. Մեծ Թաղլար



ԱՐԱՄ ՉՈԲԱՆՅԱՆ, 15 տ., Զարինջավան

ՏԻԳՐԱՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ, 7 տ., Երևան





ՆԱԻՐԱ ԱՅԴԻՆՅԱՆ, 11 տ., ԼՂԻՄ, Մարտունու շրջ., գ. Ճարտար